

ՓԵՏՐՎԱՐԻ 23-ԻՑ ՄԱՐՏԻ 3-Ը ՄՈՍԿՎԱՅՈՒՄ, ԿՐԵՄԼԻ ՀԱՄԱԳՈՒՄԱՐՆԵՐԻ ՊԱԼԱՏՈՒՄ, ՏԵՂԻ ՈՒՆԵՑԱՎ ՍՄԿԿ XXVI ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ

ՂՈՒԿԱՍ ՍԻՐՈՒՆՑԱՆ

# ԼՈՒՍԱԲԱՑ

Թուխ ամպիկին կանչեց
Գարու արտը կանաչ,
Կանչեց ծիտը ծտին,
Ձայնից օդը դողաց:

Երեքնուկը հանդից
Իր մոտ կանչեց ուլին,
Ուլն արթնացավ, կանչեց
Քնով ընկած տատին:

Ծառը կանչեց ջրին,
Ջրում բահը ցոլաց,
Աքաղաղն իր թառին
Բարձր երգեց հանկարծ:

Այդ կանչերից մութը
Մարեց, մաշվեց այնքան,
Որ մի փոքրիկ քամի
Քշեց տարավ նրան...



Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ



# ԱՐԵՎԻ ՈՍԿԻՆ

Արևն հալվեց առավոտից,
Լցվեց սիրտը կանաչ խոտի,
Ծիր ուլիկի սիրտը լցվեց,
Որ հենց նոր էր ելել ոտի:

Ապա հոսեց Արև-ոսկին
Մարտի կանաչ դռներից ներս,
Ծաղիկ դարձավ ծառի ճյուղին,
Դարձավ մեղու այդ ծաղկի մեջ:

Դարձավ առվի զվարթ շշուկ,
Անուշ բուրմունք դարձավ օդում,
Ապա հոսեց մրգերի մեջ,
Տվեց նրանց էլ՝ քաղցրությունն:

Բայց չսպառվեց նրա ոսկին,
Ինչ որ մնաց՝ հալեց մաս-մաս,
Պահեց՝ լուծի ձմռան ցրտին
Ու դարձնի գարնան երազ:

# ԵՍ ԷԼ ԿՄԵԾԱՆԱՄ ԵՎ...



ԴԱՎԻԹ ՄՈՒՐԱԴՅԱՆ

Վերջերս Նանարը շատ է կանգնում պատշգամբում և մտախոհ նայում տանիքներին: Մեր շենքը հարևան բոլոր շենքերից բարձր է, Նանարենք ապրում են ութերորդ հարկում: Ես էլ եմ շատ սիրում նրանց պատշգամբը: Հենց որ իր մոտ եմ գնում, իսկույն դուրս ենք գալիս պատշգամբ: Աշխարհն անմիջապես փոխվում է: Մենք տեսնում ենք Երևանյան ծովը, մակույկները, իսկ ամառային պարզ օրերին ոտից գլուխ երևում է Արարատը:

Մի ժամանակ, երբ փոքր էի ու մըտքովս հազար ու մի երևակայական բաներ էին անցնում, մտածում էի, որ եթե գնամ ու կանգնեմ Արարատի գագաթին, Նանարն ինձ կտեսնի՞, թե՞ ոչ: Կանգնեմ, թափահարեմ գլխարկս ու գոռամ.

«Էհե՜յ, այդ ե՜ս եմ, ե՜ս...»

Իհարկե, ձայնս տեղ չի հասնի: Բայց գուցե նկատվեմ: Չէ՞ որ Արարատի գագաթը շատ պարզ է երևում ութերորդ հարկից: Մանավանդ եթե ամառ է և երկնքում ամպի կտոր չկա...

Բայց հիմա ես արդեն գիտեմ, որ դա անհնար է: Չնայած դրան, ես էլի սիրում եմ հենվել Նանարենց պատշգամբի բազրիքին ու նայել չորս կողմը: Բացի Երևանյան ծովից, երևում են մեր թաղի հին տները: Նանարն ասում է, որ դրանք շատ գեղեցիկ են: Նրա հայացքը թափառում է կարկատած կտուրներով ու նեղլիկ բակերով, որտեղ, տաք օրերին, լվացք են անում տանտիկինները: Նայում է ու լռում: Եվ կարծես մոռանում, որ ես էլ եմ այստեղ:

— Է՜հ,— մի որոշ ժամանակ համբերելուց հետո ասում եմ ես,— արդեն հարկավոր է գնալ: Գիտես, չէ՞, հազար գործ ունեմ:

Ես իրոք հազար գործ ունեմ: Երեք ամիս առաջ ծնվեց քույրս, և մերոնք հանկարծ հիշեցին, որ ես արդեն երեխա չեմ ու կարելի է ինձ խանութ ուղարկել՝ կաթ, թթվասեր, հաց, օճառ

նելու: Եվ ես հասկացա, որ ինչքան մեծանում ենք, այնքան ավելի քիչ ժամանակ է մնում հետաքրքիր ապրելու համար:

— Լավ,— արագորեն համաձայնում է Նանարը,— որ այդպես է, ես էլ մի քիչ պարապեմ:

Ես դուրս եմ գալիս ու վերելակին սպասում: Կարող եմ, իհարկե, ոտքով իջնել: Բայց սպասում եմ: Եվ քիչ անց դռան ետևից հնչում են դաշնամուրային տաղտկալի վարժությունները: Ճիշտն ասած, մի քանի անգամ ակնարկել եմ, որ դաշնակահար դառնալու համար հարկավոր է ոչ թե երաժշտա-



կան խմբակ հաճախել, այլ իսկական դպրոց և ոչ թե տասներկու տարեկանից, այլ շատ ավելի շուտ: Ես ակնարկել եմ, որ Նանարը շատ է ուշացել: Մարդ ամեն ինչ ժամանակին պետք է անի, ասել եմ նրան, հակառակ դեպքում բան դուրս չի գա: Բայց Նանարը մի վատ սովորություն ունի: Հենց որ ուզում է պատասխանից խուսափել, ուսերն է թոթվում: Եվ, իր սովորությանը հավատարիմ, նա թոթվեց ու պատասխանեց, որ համերգներ տալու մտադրություն չունի: Ուզում է նվագել սովորել: Հենց այնպես: Ես չդիմացա ու հայտարարեցի, թե դա քաղքենիություն է: Նանարը չվիրավորվեց, պարզապես նորից թոթվեց ուսերը: Իսկ ես, լեզուս ինձ քաշելու փոխարեն, ասացի.

— Համենայն դեպս, դաշնամուրը լուրջ գործիք է, հրացան չի:

Վերելակի դռները բացվում են, կոկորդիլոսի նման կուլ տալիս ինձ ու տանում: Ես հասնում եմ առաջին հարկ և լույս աշխարհ դուրս գալիս: Բայց տուն չեմ մտնում: Ես շտապելու բան չունեմ: Արդեն երկու անգամ խանութ եմ գնացել, դասերս սովորել եմ, իսկ հեռուստացույց չեմ ուզում նայել: Ես դուրս եմ գալիս բակ ու քայլում դեպի հրաձգարանը: Դռները փակ են: Ճիշտն ասած, սա ոչ թե իսկական հրաձգարան է, այլ հին, կիսամեռ մի ավտոբուս, որ հայտնվել է մեր փողոցում այս գարնանը: Եվ իմ պատմությունը, վերջին հաշվով, սկսվում է գարնանից, այն օրվանից, երբ Նանարի հետ առաջին անգամ եկանք կրակելու:

Այդ օրը հրաձգարանում աշխատող տղան գյուտ էր արել՝ տասը փոքրիկ մոմեր էր շարել թարեքին: Վառում էր

և առաջարկում կրակել հանգցնել մոմերը, որոնք, կատվի աչքերի նման, թույլ առկայծում էին կիսախավարի մեջ:

Ես կրակեցի, բայց միայն երկու մոմ կարողացա հանգցնել:

— Ոչինչ,— ասաց տղան,— սա շատ դժվար է, մանավանդ եթե առաջին անգամ ես փորձում:

Ես համաձայնեցի, հետո ասացի Նաճարին.

— Գուցե դու գետաձիո՞ւն խփես, մոմեր հանգցնելը, ինչպես տեսնում ես, կատակ բան չէ:

Սովորաբար Նաճարը չի վիճում ինձ հետ: Բայց այս անգամ նա հրացանն առավ ու ասաց.

— Ես ուզում եմ մոմերին խփել: Դա շատ ռոմանտիկ է:

Հրաձգարանի տղան ծիծաղեց:

— Այո՛,— ասաց նա,— ռոմանտիկ է:— Հետո ավելացրեց.— Դու առաջինն էիր, որ նկատեցիր:

Ես ձայն չհանեցի: Թող փորձի, մըտածեցի, մեկ է, բան դուրս չի գալու:

— Բայց ես առաջին անգամ եմ կրակում,— խոստովանեց Նաճարը:

— Ավելի լավ,— ասաց տղան,— առաջին անգամ կրակողները հաջողակ են:

Հետո նա շրջանցեց պատնեշը, եկավ, կանգնեց Նաճարի կողքին ու ցույց տըվեց, թե ինչպես պետք է խզակոթն ուսին հենել, ինչպես նշան բռնել, հետո ինքն իր ձեռքով պահեց հրացանը, որ կրակափողը չդողա:

— Շատ երկար մի՛ պահիր,— ասաց նա,— խփի՛ր:

Նաճարը կրակեց, և մոմերից մեկն անմիջապես հանգավ:

— Ապրես,— ասաց տղան:

Մի խոսքով, տասը մոմերից երեքը հանգան: Նաճարն այնպես էր ուրախացել, կարծես հրաշք էր կատարվել: Կարծես ամբողջ կյանքում ավելի լավ բան չէր արել:

Հաջորդ օրը, դպրոցից վերադառնալիս, Նաճարը հարցրեց, թե չե՞մ ուզում արդյոք հրաձգարան գնալ:

— Հենց հիմա՞,— զարմացած ձայնցա ես:

— Իսկ ի՞նչ կա որ,— ուսերը թոթվեց Նաճարը:

— Քաղցած եմ,— ասացի ես,— ճաշից հետո կգնանք:

Նաճարը չպատասխանեց: Մենք բաժանվեցինք առաջին հարկում: Իսկ քիչ անց, երբ, չեմ հիշում թե ինչու, պատըշգամբ ելա, տեսնեմ՝ Նաճարը դուրս է գալիս հրաձգարանից: Էլ ո՜նց կլիներ, մտածեցի ես: Բազեի աչք, երկար հրացան...

Հիմա ես արդեն գիտեմ, որ նա հրաձգարանի տղայի համար է գնացել: Դեռ առաջին օրն ինձ ասաց, որ տղան շատ ռոմանտիկ է: Ասաց՝ մտքովս չէր անցնում, որ սովորական հրաձգարանում աշխատող սովորական մի մարդ կարող է ռոմանտիկ լինել: Իհարկե, տխրությամբ մտածեցի ես, կար ժամանակ, երբ ես էլ էի ռոմանտիկ: Բայց ոչ մի անգամ չեմ պատմել, թե ինչպես վեց տարի առաջ, երբ նոր էինք դպրոց ընդունվել, երազում էի Արարատի գագաթին կանգնելու և այն մասին, թե գուցե Նաճարն ինձ տեսնի ութերորդ հարկից: Ես վախենում էի, որ նա կարող է ծիծաղել վրաս, Ես ուրիշ շատ մտքեր ու երազանքներ ունեի, բայց մեղավո՞ր եմ, որ գաղտնի էի պահում: Իսկ հրաձգարանի տղան իրոք սովորական մարդ է: Կարճ կտրած մազերով: Խոշոր քթով: Այն ժամերին, երբ հաճախորդներ համարյա չեն լինում, նստում է դռան մոտ, որտեղ ավելի լույս է ու հաստափոր մի գիրք կարդում: Մի անգամ, երբ այդ գիրքն ընկած էր սեղանին, վերցրի ու սկսեցի թերթել: Ոչ մի նկար չկար:

— Ա՞յ գիրք է,— ինչ-որ բան ասած լինելու համար հարցրեցի ես:

Տղան ծիծաղեց:

— Ծա՜տ։— Հետո, արդեն լրջորեն, շարունակեց.— Փիլիսափայության պատմությունն է։

Ես ականջներիս չհավատացի։

— Ո՞նց թե,— դուրս թռավ իմ բերանից։

— Իսկ ի՞նչ կա որ,— չհասկացավ տղան։

— Ոչինչ,— ասացի ես,— ուրեմն դու պիտի ամեն բան իմանաս։

— Ինչո՞ւ,— նորից ծիծաղեց տղան։

— Փիլիսոփաներն ամեն բան գիտեն,— պատասխանեցի ես։

— Չէ՛,— ձեռքը թափ տվեց տղան,— ուզում են իմանալ։ Իսկ դա արդեն քիչ չէ։

Ես գիրքը սեղանին դրեցի և ուզում էի հրաժեշտ տալ, թեև, ինչ թաքցնեմ, նրա հետ զրուցելը պետք է որ հետաքրքիր լիներ։

— Իսկ ընկերուհիդ ո՞ւր է,— հանկարծ հարցրեց նա։



Ես որքան հնարավոր է անտարբեր տեսք ընդունեցի, նորից վերցրի գիրքը, թերթեցի, կոկորդս մաքրեցի ու ասացի՝ չգիտեմ։ Նա խորամանկորեն աչքով արեց ինձ։

— Լսիր,— ասաց նա,— դու հո սիրահարված չե՞ս։

Անակնկալից լեզուս կապ ընկավ։

— Ի՞նչ կա որ,— շարունակեց նա,— քո տարիքում ես սիրահարվել էի։ Ու գիտե՞ս ոնց։ Մեծ դասամիջոցին վազում իջնում էի Զանգվի ձորը, մասուր քաղում նրա համար։ Սաթիկ էր անունը։ Ու միշտ դասից ուշանում էի։ Դու մասուր հավաքած կա՞ս։

— Չէ,— ասացի ես,— որտե՞ղ։

— Իսկապես, որտե՞ղ,— ժպտաց տղան։— Իսկ Զանգվի ձորում մասրենիներն աճում են ուղիղ սարալանջին, թեքության վրա։ Շատ դժվար բան է, մանավանդ, երբ շտապում ես։ Մի անգամ նույնիսկ շալվարս պատռվեց։ Շատ անհարմար տեղում պատռվեց։ Չէի կարող այդ տեսքով գալ, իսկ տանն էլ, հակառակի պես, ոչ ոք չկար։ Պատկերացնո՞ւմ ես, պատռված շալվարով նստել էի դպրոցի բակում և ուտում էի Սաթիկի համար հավաքած մասուրը։

Նա վեր կացավ, մոտեցավ թարեքին շարված մոմերին ու սկսեց հերթով վառել։ Հետո ետ դարձավ, հրացանը ձեռքն առավ, նշան բռնեց։ Շատ երկար նշան բռնեց։ Ու չկրակեց։

Նկ. ՍԱՐՈ ԿԱԼԵՆՑԻ



— Իսկ հետո՞,— չդիմացա ես,— ի՞նչ եղավ հետո:

— Հետո՝ ոչինչ: Մեծացա, սիրահարությունն էլ անցավ:

Ճիշտն ասած, այդ օրվանից ես նրան հավանեցի: Գարունն ու ամառն արդեն անցել են, աշունը կես է եղել, և հրաձգարանի տղան մի տասը օր առաջ անհետացավ մեր բակից: Հետո իմացանք, որ բանակ գնալու ժամանակն է եկել: Հիմա մի ծեր մարդ է աշխատում նրա փոխարեն: Մոմերը, սակայն, մնացել են: Այս տասը օրվա ընթացքում Նանարը ոչ մի անգամ չի եկել հրաձգարան: Նա կանգնում է պատշգամբում և, մտքերի մեջ խորասուզված, նայում հին թաղի կարկատած տանիքներին ճեմող կատուներին, բակն ավլող պառավներին...

Իսկ ես անընդհատ հիշում եմ հրաձգարանի տղայի պատմածը: Մտովի տեսնում եմ, թե ինչպես է նա վազքով իջել Զանգվի ձորը, իջել ամենակարճ ճանապարհով՝ թեք ու քարքարոտ սալալանջով, որտեղ ամեն վայրկյան կարող էր գլուխկոնծի տալ ու վիզը կոտրել, ինչպես է, մատները ծակոտելով, մասուր քաղել, լցրել գրպանները և ապա շնչակտուր վերադարձել, որ դասից չուշանա: Բայց, այնուամենայնիվ, ուշացել է: Հետո ես պատկերացնում եմ, թե ինչպես նա, ձեռքը պատռված տեղին, պտույտ է գալիս դպրոցի շուրջը և սիրտ չի անում ներս մտնել: Ո՞նց մտնի: Բոլորը կծիծաղեն:

Եվ երբեմն էլ ինձ թվում է, թե ես օրինակ, սիրտ կանեի: Կգայի կմոտենայի Նանարին ու կասեի.

— Գիտե՞ս, քեզ համար մասուր էի քաղում և շալվարս պատռվեց:

Բայց ինձ միայն թվում է:

Ոչինչ, հրաձգարանի տղան ասաց, որ մեծանում ես, սիրահարությունն անցնում է:

Ես էլ կմեծանամ:




ԼԵՎՈՆ ՀԱԽՎԵՐԴՅԱՆ
բանասիրության դոկտոր

### 85. «ԹԱԹԱՎՈՐ ՍԱԳ» ԿԱՄ ԻԴԻՈՄՆԵՐԻ ՄԱՍԻՆ

**Ձեզ որևէ միտք հուշո՞ւմ է «թաթավոր սագ» (гусь лапчатый) դարձվածքը: Եթե ռուսերեն լավ չգիտեք՝ իհարկե ոչ: Մինչդեռ ռուսաց լեզվում դա նշանակում է խարդախ, խորամանկ մարդ: «Բազեի պես մերկ» (гол как сокол) դարձվածքը ռուսերեն չիմացողին պատկերացում չի տա ծայրահեղորեն աղքատ մարդու մասին, իսկ հայոց լեզվում դրա համարժեքը կլինի «թոնիրն ածես՝ շորահոտ չի գա» դարձվածքը, որի բառացի թարգմանությունը ռուսերեն անհասկանալի կլինի հայերեն չիմացողին:**

**Նախորդ զրույցում երևի ձեր ծիծաղը շարժեց «երկնքից շուն ու կատու է թափվում» դարձվածքը, որ անգլիացու ընկալմամբ հորդառատ անձրև է նշանակում: Գերմանացիները այդ նույնն են հասկանում ոչ պակաս ծիծաղելի «սատկած շան պես անձրև է գալիս» դարձվածքով:**

**Բայց չէ՞ որ օտար ականջին նույնքան ծիծաղելի կհնչի մեր «նապաստակի ջրի ջուրը» դարձվածքը, որի ի-**

մասը ռուսները արտահայտում են «կիսելի յոթերորդ ջուրը» (седьмая вода на киселе) մեզ համար տարօրինակ արտահայտությամբ:

Այսօրինակ դարձվածքները լեզվաբանության մեջ կոչվում են իդիոմ: Սա ևս հունարեն բառ է, նշանակում է յուրահատկություն: Լեզվաբանները դա բնութագրում են այսպես. «Միայն տվյալ լեզվին հատուկ անքակտելի դարձվածք, որի նշանակությունը չի համընկնում այդ դարձվածքը կազմող բառերի նշանակությանը»:

Իրոք, ի՞նչ կապ կարող է լինել թաթավոր սագ և խարդախ մարդու միջև կամ շուն ու կատվի և հորդ անձրևի կամ էլ նապաստակի ջրի և հեռավոր ազգականի: Մինչդեռ դրանց ծնունդ տված ազգային լեզուների մեջ այդ կապը ոչ միայն կռահվում է, այլև հետապնդված միտքն արտահայտում է շատ ավելի վառ, քան ուղղակի բացատրությունը:

Բայց ահա, երբ մենք լսում կամ կարդում ենք «հորթի հրճվանք», «երկնքից աստղեր ցած չի բերում», «առաջ է գընում կրիայի քայլերով», «վարդագույն ակնոցով է նայում», այս և համանման դարձվածքները, իսկույն հասկանում ենք՝ անկախ այն պարագայից, թե դրանք լեզվական և ազգային ինչ միջավայրի ծնունդ են: Ինչո՞ւ: Որովհետև հորթն ամենուրեք տրտինգ է տալիս հորթավարի, կրիան ամենուրեք նույն դանդաղկոտն է, վարդագույն ակնոց ով էլ դնի՝ աշխարհը վարդագույն կտեսնի: Իսկ երբ մեկին հարցում անեք մի կարևոր գործի մասին ու նա ձեզ պատասխանի, թե «գործը գլխարկի մեջ է» (дело в шляпе), դարձվածքը չիմանալու դեպքում դուք չեք հասկանա, որ դա նշանակում է գործը գլուխ է եկել:

Հայերենն էլ, իբրև զարգացած լեզու, շատ հարուստ է ինքնուրույն, իր ազգային լեզվամտածողությանը հատուկ դարձվածքներով: Դրանք մեր լեզվի ոչ միայն արտահայտչական մեծ հնարավորությունների վկայությունն են, այլև նրան ազգային բույր ու հրապույր տըվող թանկագին հարստությունը: Ահա ինչու որքան լավ իմանանք հայկական դարձվածաբանությունը, որքան շատ հայկական իդիոմներ իմանանք ու կարողանանք գործի դնել՝ այնքան ավելի համ ու հոտ կունենա ձեր հայերենը: Բնականաբար, հայկական իդիոմները ևս, ինչպես ուրիշ լեզուների իդիոմներ, բառացի թարգմանության ենթակա չեն:

Հայ մարդն ասում է և՛ «խոսքը կտուրը գցել», և՛ «խոսքը գետին գցել՝» հիանալի հասկանալով, որ մի դեպքում դա նշանակում է խոսքի նյութը դիտումնավոր կերպով փոխել, մյուս դեպքում՝ մեկի խնդրանքը չկատարել, բանի տեղ չդնել: Փորձեցեք այդ իդիոմները բառացի թարգմանել ռուսերեն և տեսեք ինչ դուրս կգա:

Ոչինչ էլ դուրս չի գա: Դրանք ունեն խորապես ազգային բնույթ, բխում են մեր ժողովրդի կյանքից, կենցաղից, բարքերից, դարավոր ավանդույթներից, ազգային պատկերավոր մտածողությունից, լեզվամտածողությունից առհասարակ: Հիշո՞ւմ եք Մակար Եկմալյանի «Լռեց» սքանչելի երգի տողերը, որոնց հեղինակն է Ռափայել Պատկանյանը. «Մնացի մենակ՝ հոգիս վրդովված, ձեռներս ծոցիս, գլուխս քարշ արած»: Կարելի է նույնիսկ նկարել՝ այնքան հստակ է պատկերը: Երբ հայ մարդն ասում է «մնաց ձեռները ծոցում՝» դա հայի պատկերացումն է մոլոր ու տրտում մնացած մարդու մասին, մի այլ ազգության մարդ նույն վիճակն այլ կերպ է պատկերացնում:

Այսպես ուրեմն՝ բոլոր լեզուներն էլ ունեն իրենց իդիոմները՝ յուրահատուկ դարձվածքները, որոնք բառացի թարգմանել չի կարելի, բայց դրանց համարժեքները գտնել կարելի է:

# ՆԱՄԱԿ ԱՂՎԵՍԻԿԻՆ

ՎԻԿՏՈՐ ՀՈՎՍԵՓՅԱՆ

Իր աղջկան շատ է սիրում
որսորդ Ալեքսանը,
Միշտ գովում է, նրան գովում
փողոցում թե տանը:
— Էլ ո՞վ ունի Նանոյիս պես
ոսկեդեղին մազեր,
Էլ ո՞վ ունի Նանոյիս պես
մով-մանուշակ աչքեր...

Նա աղջկան երեկ շոյում
ու ասում էր այսպես.
— Մարտի ութին ի՞նչ ես ուզում,
որ նվիրեմ ես քեզ:

— Մարտի ութին,— Նանոն շիկնեց,—
Մարտի ութին... ու-թի՞ն...
Մարտի ութին ուզում եմ ես
աղվեսիկի մորթի:

Իր աղջկան շատ է սիրում
որսորդ Ալեքսանը,
Ա՛յ աղվեսիկ, քեզ եմ գրում,
իմացիր այս բանը:
Տե՛ս, փափկապո՛չ, բնից չելնես
հանկարծ մարտի յոթին,
Թե չէ Նանոն Մարտի ութին
կունենա քո մորթին:

# Նոր Բաբելոն

ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ

— Պե՞տք են արդյոք այս բազմաթիվ լեզուներն ու բարբառները՝ այս համաշխարհային Բաբելոնը... Եթե պետք են՝ ո՞ւմ... պատմությա՞նը, թե՞ ապագային: Բայց չէ՞ որ դրանք անհաղթահարելի խոչընդոտներ են ազգերի փոխըմբռնման ճանապարհին... Բոլոր դեպքերում ընդհանուր լեզուն, թեկուզ որպես երկրորդ լեզու, անհրաժեշտ է:

Դավիթ Անդոկյանն իր աշխատասենյակում արդեն ավարտում էր «Համաշխարհային միասնական լեզվի մասին» գիտական հոդվածը:

Եզրափակիչ տողերը գրելուց առաջ մի փոքր դադար տվեց, ծխեց, ըստ սովորության քորեց ականջի բլթակը, վերցրեց գրիչը... Եվ հանկարծ սենյակում մեխակի ու վարդի արբեցուցիչ բույր տարածվեց... կոպերը ծանրացան, աչքերն իրենք իրենց փակվեցին...

«Պետք է ավարտել հոդվածը, առանց այն էլ շատ եմ ուշացրել»: Անդոկյանը ուժ գործադրելով փորձեց բացել աչքե-



րը... Բացեց... Բայց ո՞ւր են իր գրասեղանը, թղթերը, գրիչը... ո՞ւր է իր աշխատասենյակը... որտե՞ղ է ինքը...

Նա մի հայացք նետեց իր վրա. կիսապառկած էր փափուկ, կաշեպատ, հարմարավետ թիկնաթոռին՝ ինչ-որ հսկայական կրկեսանման գմբեթավոր դահլիճում... Հետո նկատեց, որ սենյակի կենտրոնում կլոր հրապարակ կա, իսկ հրապարակի շուրջը՝ իրենից ձախ և աջ, բոլորաձև շարված թիկնաթոռներին կիսապառկած են տարբեր գույնի և տարբեր ազգերի տարազներով մարդիկ...

— Չէի՞ք ասի արդյոք, թե որտեղ ենք մենք,— հարցրեց նա իր աջակողմյան գանգրահեր, արծվաքիթ հարևանին:

— Չգիտեմ, որտեղ ենք, չգիտեմ ինչպես եմ ընկել այստեղ, ոչինչ չեմ հասկանում:

— Ճիշտ է, մինչև այստեղ հայտնվելս մի փոքր խմել էի, բայց ոչ գիտակցությունս կորցնելու աստիճան... Ինչո՞ւ են մեզ այստեղ հավաքել,— գրգռված ասաց Անդոկյանի ձախակողմյան հարևանը:

Դավիթ Անդոկյանը նայեց աջակողմյան հարևանին, նայեց ձախակողմյանին, և հանկարծ նրա ուղեղում մի անսպասելի միտք ծագեց. «Բայց չէ՞ որ ես նրանց հետ խոսում էի հայերեն... Ըստ իրենց արտաքինի և դիմագծերի, ո՛չ աջակողմյան և ո՛չ էլ մանավանդ ձախակողմյան հարևաններս հայեր չեն, դա կասկածից դուրս է: Իսկ գուցե հայագետնե՞ր են... Գուցե հայագիտական համաժողո՞վ է այստեղ...»

— Ներեցեք,— դիմեց նա աջակողմյան հարևանին,— ասացե՛ք խնդրեմ, դուք ո՞ր երկրի, ավելի ճիշտ ո՞ր ազգի ներկայացուցիչն եք:

— Ֆրանսիացի եմ, բնիկ փարիզեցի, մասնագիտությամբ՝ ինժեներ-կիբեռնետիկ։

— Բայց դուք հիանալի հայերեն եք խոսում... Որտե՞ղ եք սովորել...

— Հայերե՞ն... ի՞նչ հայերեն... որտեղի՞ց հնարեցիք։ Ճիշտ է, Փարիզում ունեմ հայ ծանոթներ, բայց նրանք ինձ հետ ֆրանսերեն են խոսում, ես հայերեն ոչ մի բառ չգիտեմ... Պետք է ասեմ, որ ինձ էլ զարմացնում է ձեր այդքան մաքուր ֆրանսերենը։

— Իսկ իմ կարծիքով, երկուսդ էլ խոսում եք արաբերեն, այն էլ շատ վարժ,— միջամտեց ձախակողմյան հարևանը...

Այժմ արդեն վիճում էին բոլորը, երեք-երեք, չորս-չորս։ Յուրաքանչյուրը պնդում էր, որ մյուս բոլորն իր մայրենի լեզվով են խոսում։ Իսկ Անդոկյանին զարմացնում էր այն, որ նրանք բոլորն էլ խոսում էին հայերեն...

Վեճը վերջապես դադարեց, տեղը զիջելով նոր անհանգստության...

— Մեզ բանտարկել են...

— Մենք առևանգվել ենք, մենք մաֆիայի ձեռքում ենք...

— Ինչու՞, ինչ նպատակով են մեզ այստեղ բերել...

— Ի՞նչ են մտադիր անել մեզ։

Բոլորաձև հրապարակի կենտրոնում մի դռնակ բացվեց, և այնտեղից հայտնվեց մեկը, որը տարբեր էր մեզ համար սովորական դարձած մարդու պատկերացումից։ Բայց ինչո՞վ էր նա հատկապես տարբերվում, դժվար թե ներկաներից որևէ մեկը կարողանար բացատրել։ Միակ ակնառու տարբերությունն այն էր, որ նա ներկաներից անհամեմատ բարձրահասակ էր, իսկ հոնքերն ու աչքերը վառ կարմիր էին...

— Բարեկամներ,— ասաց Կարմրահոնը, թավ, ռոբոտային ձայնով,— ձեր հարցերը միանգամայն տեղին են և իրավացի։ Այժմ ես կփորձեմ բավարարել ձեր հետաքրքրասիրությունը։ Նախ ասեմ, որ դուք բանտարկյալներ չեք. մեր զրույցն ավարտելուց անմիջապես հետո դուք կվերադառնաք Երկիր...

— Երկի՞ր... Ուրեմն մենք Երկրի վրա չե՞նք,— անհանգստացավ ճապոնացու դիմագծերով մի կարճահասակ, չորուկ երիտասարդ։

— Մենք ձեզ, այսպես ասած, առևանգել ենք մի շատ կարևոր գիտափորձի համար,— շարունակեց Կարմրահոնը,— մենք Երկիր ենք ժամանել ձեր հարևան գալակտիկայի մի մոլորակից։ Երկրում մենք ականատես եղանք մեր մոլորակի համար մի արտասովոր երևույթի՝ բազմաթիվ լեզուների առկայությանը, և դրա հետևանքով առաջացած, երբեմն, մանավանդ փոքրաթիվ ազգությունների համար, ճակատագրական դժվարությունների... Եվ քանի որ մենք հնարավորություն ունեինք, որոշեցինք օգնել ձեզ այդ հարցում և միաժամանակ դրանով հաստատել մեր բարեկամական տրամադրությունը ձեր ժողովուրդների նկատմամբ։ Այժմ մենք գտնվում ենք մեր երկու գալակտիկաների միջև։ Դուք իրավացիորեն հարցնում եք, թե ի՞նչ իրավունքով ենք ձեզ առևանգել։ Բանը նրանում է, որ դժվար թե ձեզանից մեկնումեկը հոժարակամ համաձայներ այս հեռավոր՝ ձեր մոլորակում առայժմ վըտանգավոր համարվող, ճանապարհորդությանը։ Բացի այդ, հարկ կլիներ ձեզանից յուրաքանչյուրին բացատրել ճանապարհորդության նպատակը, իսկ դա մեզանից շատ ժամանակ կխլեր... Ահա այս իսկ պատճառով մենք կիրառեցինք միանգամայն անվնաս անուշաբույր քնամիջոց և ձեզ փոխադրեցինք այստեղ։

— Իսկ քանի՞ տարի է տևել այդ փոխադրումը,— հարցրեց հնդիկը։

— Մի քանի վայրկյան...

— Արդյոք գերլուսային արագությամբ

չե՞ն սլանում ձեր նավերը,— բացահայտ հեգնանքով հարցրեց չինացին:

— Ո՛չ, մտքային,— անվրդով պատասխանեց Կարմրահոնը:

— Եվ ի՞նչ վառելանյութով,— նույնպես հեգնանքով հարցրեց վրացին,— երևի ուղեղայի՞ն...

— Գուցե և սրամիտ է այդ ամենը ձեր մոլորակում, բայց մի՛ վիրավորվեք, եթե ասեմ, որ մեր նավերի կառուցվածքի և դրանցում օգտագործվող վառելանյութերի մասին տվյալներն առայժմ գաղտնի ենք պահում ոչ միայն ձեզանից, այլև մյուս մոլորակների բնակիչներից...

— Այդ դեպքում գուցե բացատրեք, թե ինչ գիտափորձի համար եք առևանգել մեզ, խախտելով Մարդու իրավունքների մասին օրենքը,— հարցրեց վրդովված անգլիացին:

— Ո՞վ է ձեզ իրավունք վերապահել, առանց մեր համաձայնության, մեզ օգտագործել փորձակենդանիների փոխարեն,— դժգոհեց Անդոկյանի աջակողմյան հարևանը:

— Բարեկամնե՛ր,— պատասխանեց Կարմրահոնը,— այժմ ձեզ հետ խոսում եմ իմ մոլորակի բնակիչների լեզվով, որն ի դեպ, թե՛ իր հնչյունային կազմով, և թե՛ շարահյուսությամբ, միանգամայն տարբեր է ձեր մոլորակի բոլոր լեզուներից: Դուք էլ յուրաքանչյուրդ խոսում եք ձեր մայրենի լեզվով և հասկանում եք իրար: Հենց սա էլ եղել է մեր կազմակերպած գիտափորձի նպատակը, որն, ինչպես տեսնում եք, հաջողությամբ պսակվեց...

— Միանգամայն իրավացի եք,— ասաց Անդոկյանի դիմաց՝ բոլորաձև հրապարակի մյուս կողմում նստած ֆինը,— սակայն բացատրեցե՛ք խնդրեմ, թե ի՞նչ էֆեկտ է սա, ինչպե՞ս է առաջանում և որքա՞ն կտևի...

— Գուցե պարզապես հիպնո՞ս է կամ անպարարությու՞ն, տելեպա՞տիա,— միջամտեց ֆինի հարևան պարսիկը:



— Ո՛չ, ո՛չ, բարեկամնե՛ր,— անվրդով պատասխանեց Կարմրահոնը,— այստեղ ո՛չ հիպնոս կա, ո՛չ անպարարություն, ո՛չ էլ տելեպատիա կամ նման այլ բան: Պարզապես մեր ձեռքի տակ կար մեր գիտնականների վերջերս ստեղծած մի բազմականալ սարք, որն սկզբում նախատեսված էր բոլորովին այլ նպատակների համար: Սակայն ձեր մոլորակում լինելուց և, ինչպես արդեն ասացի, լեզվական բազմազանությունը տեսնելուց հետո, մենք որոշեցինք սարքը վերափոխել և դարձնել վաթսունմեկ կանալանոց թարգմանիչ...

— Այդպիսի սարքեր մեզ մոտ էլ կան, և դրանց արժեքը լավ գիտենք. նույնիսկ ընդամենը հինգ լեզուների թարգմանիչը մի ամբողջ սենյակ է զբաղեցնում,— ասաց գերմանացին:

— Իսկ մեր սարքն, ինչպես տեսնում եք,— ասաց Կարմրահոնը,— շատ փոքր է, այնքան փոքր, որ այն տեղադրել ենք ձեր ականջների բլթակներում՝ մաշկի տակ: Նեղություն կրեք խնդրեմ, շոշափել ձեր ականջների բլթակները և դուք ձեր մատների տակ կզգաք այնտեղ տեղադրված սիսեռաչափ գնդիկները՝

հենց դրանք են թարգմանիչները։ Նրանք ոչ միայն թարգմանում են ուրիշի խոսքը և հաղորդում մեր լսողությանը, այլև արգելում են օտար ձայնի մուտքը, որի հետևանքով էլ ստացվում է միևնույն լեզվով խոսելու պատրանքը։

— Ի՞նչ խոսք, որ սա վիթխարի նշանակություն ունեցող գյուտ է և կարող է արմատապես վերափոխել երկրագնդի բնակչության ազգամիջյան հարաբերությունները։ Այս հրաշալի գյուտի առթիվ մեր մոլորակի ողջ բնակչության անունից ի սրտե շնորհակալ ենք ձեզ... Սակայն, ցավոք, մեր մոլորակի վեց միլիարդ բնակիչներից այստեղ ընդամենը վաթսուն մարդ է ներկա։ Իսկ ի՞նչ պետք է անեն մնացած հինգ միլիարդ ինը հարյուր իննսուն ինը միլիոն ինը հարյուր իննսուն ինը հազար ինը հարյուր քառասուն հոգին,— մտահոգված հարցրեց պորտուգալացին։

— Ես ձեզ կատարելապես հասկացա,— ասաց Կարմրահոնը,— թող այդ հանգամանքը ձեզ բնավ չանհանգստացնի։ Իհարկե, այնքան ժամանակ չունենք մեր տրամադրության տակ, որպեսզի կարողանանք Երկրի ներկա և ապագա բոլոր բնակիչներին նման պատվաստումներ կատարել, սակայն մենք ամեն ինչ նախատեսել ենք. ձեզանից յուրաքանչյուրն իր գրպանում կգտնի այս սարքի բոլոր տեխնիկական փաստաթղթերի և նախագծերի պատճենները։ Համոզված ենք, որ ձեր մոլորակի գիտնականները և կոնստրուկտորները ոչ միայն կկարողանան սկսել դրանց մասսայական թողարկումը, այլև աստիճանաբար կավելացնեն կանալների թիվը՝ ընդգրկելով նորանոր լեզուներ... Դեհ, ուրեմն հաջողություն ձեզ և գնաք բարյավ։ Մի՛ մոռացեք, որ այդ վաթսունմեկ լեզուներից մեկը մեր մոլորակի լեզուն է. հիշեցե՛ք մեզ... Ցտեսություն...

... Կարմրահոնն անհայտացավ... Լույսը մարեց... Դահլիճն ու թիկնաթոռներն ընկղմվեցին խավարում...

... Անդոնկյանն աչքերը բացեց, նայեց շուրջը. նստած է իր աշխատասենյակում, իր գրասեղանի մոտ, հնանոց և ծանր բազկաթոռին... Գրասեղանին դարսված են հոդվածի պատրաստի էջերը... Կիսավարտ վերջին էջի վրա ընկած է գրիչը...

«Տոգն ու հոգնածությունն իրենցը արեցին. քնել էի,— մտածեց նա, ավելի հարմար տեղավորվելով բազկաթոռին,— բայց ինչքա՞ն եմ քնել,— նայեց ժամացույցին,— համենայն դեպս, կես ժամից ոչ ավելի... Կեսժամյա հանգիստ և այսպիսի հոյակապ երազ...»

Անդոնկյանը վեր կացավ, շրջեց սենյակում, մի քանի անգամ մոտեցավ պատուհանին և իրենից անկախ նայեց դեպի վեր՝ երկնքին, ապա նորից նստեց գրասեղանի մոտ, նայեց վերջին էջը, վերցրեց գրիչը և, վերջին պարբերությունը գրելուց առաջ, ըստ սովորության քորեց ականջի բլթակը և հանկարծ... մատների տակ զգաց փոքրիկ, սիսեռաչափ գնդիկը...

Նկ. ԱՇՈՏ ԲԱՅԱՆԴՈՒՐԻ



ՅՈՒՐԻ ՍԱՀԱԿՅԱՆ

# ՉԻՆԱՐ ԾԱՌԸ

Սա մի հսկա թռչնաբույն է,
Կանաչ ծտարան:
Դժգոհում է չինարը ծեր.
«Գլուխս տարան...
Ճտճտում են առավոտից
Մինչև ուշ գիշեր,
Ո՛չ հարմար է սրանց պահել
Եվ ո՛չ էլ՝ քշել...
Միշտ նույն երգն է,
Նույն աղմուկը
Եվ միշտ նույն ինչուն:
Չեմ հասկանում
Զրուցո՞ւմ են,
Թե՞ անվերջ վիճում...»

Բայց երբ նրանք, այնուհանդերձ,
Մտնում են խոր քուն,
Գյուղամիջյան չինարը ծեր
Մնում է արթուն,
Օրորում է ճնճղուկների
Քունը թևավոր,
Որ երազում կորեկ գտնեն,
Օր՝ արևավոր,
Որ արևը արև մնա,
Ինքը՝ ծտարան
Եվ արթնանա դժգոհելով՝
«Գլուխս տարան...»

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ

# ԱԼԻՔՆ ԱՍԱՑ

Ալիքն ասաց.
— Իսկ հիմա էլ
Ես ուզում եմ լինել երկինք:
Ես ուզում եմ ծովի երգը
Խառնել երկնի աստղոտ երգին:
Ա՜խ, թողե՛ք իմ փեշը, թողե՛ք:
Ձեզ ափերն են հրապուրում,
Դուք էլ ափե՛րը ողողեք,
Քույրիկնե՛ր իմ ձյունափրփուր...
Ա՜խ, մի՛ մարեք թափս թեթև...
Ա՜խ, արձակե՛ք, թողեք գնամ,
Ես կթափվեմ աստղերի հետ
Եվ նորից ձեր գիրկը կգամ...

Զգաստ էին ափերը հին,
Թեև ոչինչ չէին հիշում:
Խփում էին ալիքներին
Ու ետ քշում փշուր-փշուր:



ՀՈԿՏԵՄԲԵՐԻԿՆԵՐԸ ՀՈԿՏԵՄԲԵՐԻ ԵՐԿՐՈՎ.

# ԹՌԻՉՔՆ

Երևանի Գայի անվան դպրոցի բեմի ճակատին մեծ ինքնաթիռ էր նկարված ու նույնքան մեծ երթուղային քարտեզ, իսկ բեմը... Չէ, բեմ չկար, այն վերածված էր ինքնաթիռի սրահի: Ցերեկույթըն սկսվելուն պես 3-րդ Գ դասարանի հոկտեմբերիկները իրենց տեղերը գրավեցին «ինքնաթիռի սրահում», և «ուղեկցորդուհի» Գայանեն խաղ-ճանապարհորդության մասնակիցներից պահանջեց ամրացնել անվտանգության գոտիները: Ժամփորդությունն սկսված էր:

Թռիչքի բարձրության, օդի ջերմության, ինքնաթիռի անձնակազմի մասին տեղեկություններ հաղորդելուց հետո «ուղեկցորդուհին» հարցրեց, թե հոկտեմբերիկներն ինչ գիտեն մեր հանրապետության խոշոր կառույցների մասին: «Ուղևորները» «ինքնաթիռի պատուհաններից» նայելով պատմում են օդանավակայանի նոր համալիրի, երիտասարդական պալատի, Արփա-Սևան ջրատարի և իհարկե երևանյան մետրոպոլիտենի մասին:

Երթուղու առաջին կայարանը Ատոմմաշն էր: «Ուղեկցորդուհին» հարցրեց, թե ինչ գիտեն «ուղևորները» այդ խոշոր կառույցի մասին:

— Վոլգոդոնսկի Ատոմմաշ գործարանը գտնվում է Դոն գետի ափին,— իրար ընդմիջելով վրա բերին նրանք:

— Իսկ ի՞նչ է նշանակում Ատոմմաշ:

— Ատոմային մեքենաշինական գործարան,— իսկույն հետևեց պատասխանը:

Մի քանի րոպեից ինքնաթիռը վայրէջք կատարեց: Երեխաները իջան ինքնաթիռից և հայկական շուրջպար բռնեցին:

Նրանք այնքան կատարյալ, այնքան ճկուն ու կենսախինդ էին պարում, որ ասես երգի-պարի պրոֆեսիոնալ կոլեկտիվ էր հանդես գալիս հոկտեմբերիկական համազգեստով: Նույնքան հաջող էին հաջորդ կայարաններում և ինքնաթիռում կատարած նրանց երգերն ու արտասանությունները:

Նոր «ուղեկցորդուհի» Նունեն նրանց պատմում է Կամա գետի ափին գտնվող ԿամԱԶ ավտոգործարանի մասին, որն արտադրում է ծանրաքարշ մեքենաներ:

Իմացեք, որ 3-րդ Գ-ն այնքան էլ սովորական դասարան չէ: Այնտեղ չկան ետ մնացողներ: Դասարանի բոլոր՝ 31 հոկտեմբերիկներն էլ մասնակցում են պարի խմբակի պարապմունքներին: Այս երկու տարում դպրոցականները այնքան համբավավոր են դարձել, որ նրանց հրավիրում են համերգներով հանդես գալ շրջաններում ու գյուղերում: Դպրոցականների հանրապետական փառատոնում նրանք առաջին տեղն են գրավել:

Հաջորդ կայարանը ԲԱՄ-ն է՝ աշխատատարությամբ, չափսերով ու ներդրված միջոցներով ամենախոշորը, և զուր չէ, որ ժողովուրդը այն անվանում է

# ՍԿՍՎԱԾ Է

Դարի կառույց: Հոկտեմբերիկները իրենց իմացածը պատմում են նոր «ուղեկցորդուհի» Մարգարիտին:

Դարի կառույցի վրա աշխատում են նաև ծնողների հետ շինարարություն մեկնած դպրոցականները: Նրանցից Միխայիլ Սերգեևը այսպիսի ոտանավոր է գրել մայրուղու մասին.

Եղևնիներ շատ կան տայգայում:
Բայց այս եղևնին
Իմ ձեռքով եմ տնկել:

Կբարձրանա, կաճի
Ու կպատմի մարդկանց
Մի գեղեցիկ հեքիաթ
Խիզախների մասին,
Որ տարիներ առաջ
Սիրով տայգա եկան,
Կառուցեցին փառքի
Մայրուղին այս երկար:

Խաղ-ճանապարհորդության վերջում երեխաները կատարում են «Մենք ուրախ տղաներ ենք» երգը... Այնուհետև հանդիսականները երկար ծափահարում են խաղ-ճանապարհորդության մասնակից 8-րդ Գ դասարանին, պիոներ-ուղեկցորդուհիներին, դասվարին, պարուսույցին և բոլոր նրանց, ովքեր այդքան բավականություն պատճառեցին իրենց փոքրիկ, բայց շատ գրավիչ ցերեկույթով:

ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ

Լուսանկարը՝ ՏԻԳՐԱՆ ՓԱԾԱՅԱՆԻ





Հեղուշ Թումանյանը 50 տարի անընդմեջ հայոց լեզու և գրականություն է դասավանդել Իջևան քաղաքում: Ուսուցչուհին մանկավարժական աշխատանքի երկար տարիների ընթացքում գրի է առել երեխաներից լսած ուշագրավ արտահայտությունները, որոնցից մի քանիսը ներկայացնում ենք ստորև:

●

Սյուզանը լաց էր լինում:

— Գործը թո՛ղ, նրա՛ն վերցրու, որ ձեռը կտրի,— հարսին ասաց տատը:

Սյուզանը սաստկացրեց լացը, արցունքների միջից կրկնելով.

— Հա, էլի, չի վերցնում, թե մարդ ձեռը կտրի:

●

Սյուզանի տատիկը և մայրը խիստ զբաղված էին: Տատիկը Սյուզանի մորն ասաց.

— Վեր կաց ճա՛շ տաքացրու, երեխաները էսա կգան դպրոցից:

— Զբաղված եմ, մա՛մ ջան, ինքդ տաքացրու:

Սյուզանը, որ խաղում էր իր համար, լսեց, բայց ոչինչ չասաց:

Քիչ հետո մայրը նրան ասաց.

— Սյուզի՛կ ջան, գնա ջուր բեր մամայի համար:

— Ի՛նքդ գնա խմիր,— պատասխանեց Սյուզաննան:

— Սյուզի՛կ, էդ ինչպե՞ս ես պատասխանում մամային...

— Բա դու ինչպե՞ս պատասխանեցիր տատիկին:

●

Սյուզանը իր անհիմն լացով շատ նեղացրեց տատին:

— Դե որ լացիդ վերջ չես տալիս, ես էլ գնում եմ կորչեմ,— ասաց տատիկը:

Սյուզանը նայեց նրա մատի մատանուն և ասաց.

— Դե որ գնում ես կորչես, մատանիդ թո՛ղ...

●

— Սյուզի՛կ ջան, գնա, տես, ջուրը տաքացել է, արի ինձ ասա, որ վեր կենամ գործ անեմ,— խնդրեց տատիկը:

— Վա՜յ, տատի՛կ ջան, ջրի ծուխը երկինք է հասել, շուտ վեր կաց գործդ արա,—ասաց Սյուզաննան:

●

Սյուզանը, որ եղբորից լսել էր այբուբենի հնչյունները և տեսել տառերը, վերցրեց նրա գիրքը և նրա օրինակով կրկնեց.

— Ա-մեծատառ, ա-փոքրատառ...

Իսկ երբ հանդիպեց 8 թվանշանին, մոտեցավ եղբորը, մատը դրեց 8-ի վրա, ասաց.

— Արի՛կ ջան, էս 8-ը մեծատա՞ռ է, թե՛ փոքրատառ...

# ԵՐԵԿ՝ ԵՍ, ԱՅՍՕՐ՝ ԴՈՒ, ՎԱՂԸ՝ ՆԱ

ՎԱՐՈՒԺԱՆ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

— Երկար ես մտածում,— անհամբերություն ցույց տվեց հայրը:

— Մտածելու խաղ է, մտածում եմ,— առարկեց Արամը,— ուզու՞մ ես ժամացույցով խաղանք:

— Ես հանգստանալու համար եմ խաղում,— ասաց հայրը,— ոչ թե գլուխս ցավեցնելու:

Արամը խաղաքայլը կատարեց և հաջորդի մասին մտածելու փոխարեն դիտեց հոր մտահոգ ու լարված դեմքը: Չէ, նա արդեն չի գիջում, ինչպես առաջին օրերին, երբ ինքը նոր էր հաճախում շախմատի խմբակը: Լրջորեն ցանկանում է հաղթել և նյարդայնանում է, որ դա չի հաջողվում: Արամը ժպտաց: Գոհ էր, իհարկե, որ հորը նեղը գցեց: Նայեց խաղատախտակին: Չէ, մրցումների ժամանակ չէր ուզենա այն դրության մեջ ընկնել, որի մեջ գտնվում էր հայրը այդ պահին:

Նա հաջորդ խաղաքայլն արեց արագ և ինքնավստահ, մի տեսակ անփույթ: Հայրը դեմքը ծամածռեց, սակայն ոչինչ չասաց: Ի՞նչ ասեր: Պատասխանը պատրաստ էր. «Դանդաղ եմ խաղում, նեղանում ես: Արագ եմ խաղում, նեղանում ես»: Դիմացն ընկերը չէր, որ պարծենար. «Շախմատ խաղալ չգիտես: Գնա սովորի՛ր, հետո արի հետս խաղա»:

Հիմա հոր հետ կատակել չի կարելի: Մեծ աղմուկ կբարձրանա, և մայրը կտրականորեն կխնդրի, որ այդ խաղը տնից վերացնեն, և հայրը կզրկվի հանգստի մի ձևից, որ նրան դուր է գալիս:

— Այսօր իմ խաղը չի ստացվում,— խոստովանեց հայրը:

«Ախր դու շախմատի տեսություն չես ուսումնասիրում»,— պիտի բացատրեր Արամը, բայց չասաց, որովհետև դրանով ասած կլիներ, որ այսուհետև, եթե ոչ միշտ, ապա հաճախ էր հաղթելու նրան: Ինքը կարող էր հոր հետ խաղալ ավելի թույլ, բայց պիտի զրկվեր սպորտային չարությունից, առանց որի հնարավո՞ր չէ առաջադիմել այդ ասպարեզում: Ասենք, այս մի խաղը զիջեց, հետո՞... Նա համոզված էր, որ չէին զիջի ո՛չ Կասպարովը, ո՛չ էլ Տիգրան Պետրոսյանը: Իհարկե, ինքը հոգեպես իրեն թեթև պիտի զգար, եթե զիջեր հորը, ինչպես նա անում էր, երբ ինքը՝ Արամը բոլորովին երեխա էր:

— Վերջացրե՛ք, հաց ուտենք,— ասաց մայրը:

— Թողնենք, հետո կշարունակենք,— առաջարկեց Արամը:

— Չէ՛...— համառեց հայրը:

Արամը հաստատ գիտեր, որ հայրը հանձնվելուց բացի, ուրիշ ելք չունի, սակայն չառարկեց: Ինքը՝ Արամը շատ է ուժեղացել և, երևի, հաջորդ անգամներին ինչ-ինչ առիթներով խուսափի հոր հետ խաղալուց:

— Ես ասացի՝ վերջացրե՛ք,— կրկնեց մայրը:

— Հը՞...— իբրև թե շփոթվեց Արամը՝ շրջվելով, և արմունկով տախտակն ու խաղաքարերը գցեց հատակին:

— Այդ ի՞նչ արեցիր, դիտմամբ խառնեցիր, հա՞, վախեցար, հա՞... — հայրն ուզեց բարկանալ, չկարողացավ, և կատակել նույնպես չկարողացավ, ավարտեց սիրած բանաստեղծության տողով.

— Երեկ՝ ես, այսօր՝ դու, վաղը՝ նա...




ՎԻԿՏՈՐՅԱ ՎԱՐԴԱՆ

Նկ. ԱԼԵՔՍԱՆԴՐ ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Ամեն ինչ սկսվեց երիցս անիծյալ կավե կճուճից, որը նանը լվացել, մաքրել, դրել էր բակում չորանալու, որ երեկոյան վարունգ, պղպեղ և զանազան բաներ թթու դնի:

Դա մի մեծ, շատ մեծ կճուճ էր, որին կարաս էինք ասում, բարձրությունը՝ իմ բոյի, լայնաբերան, որի մեջ, գլուխդ էլ կմտնի:

— Պղպեղ ու վարունգ կդնեմ,— ասաց նանը և ձեռքի փայտով թեթևակի խփեց փքված փորին:— Ձմռան համար,— ավելացրեց նա, թեքելով գլուխը և հաճույքով ականջ դնելով դատարկ կարասի հաճելի ձայնին, որն ապացուցում էր, թե կարասը ոչ մի ճաք չունի: Հետո, համենայն դեպս, ինձ ու Հրանտիկին սպառնաց փայտով ու գնաց:

Ես ուսերս թոթվեցի: Շոգն այնպես էր հալից գցել ինձ ու Հրանտիկին, որ ոչ մի ցանկություն չէր մնացել ոչ միայն չարություն անելու, այլև, նույնիսկ, տեղից շարժվելու:

— Ողջու՜յն,— ասաց նեգրի նման գանգրահեր Պետրոսը՝ մեր հարևանի տղան, որ կողքներիս ծլեց ասես գետնի տակից: Նրանց տունը քարե ցածլիկ պարսպի մյուս կողմում էր, որը նանի տիրույթը բաժանում էր նրանց բակից: Նա հայտնվում էր ճիշտ այն պահին, երբ նանը հեռանում էր բակից. համա՞ թե վախենում էր նանից, ինչպես որ վախենում էին շրջակայքի բոլոր տղաները:

— Էս ի՞նչ բան է,— հարցրեց նա, գլխով անելով ցանկապատին հենած կարասի կողմը:

Ես լռեցի, որովհետև տանել չեմ կարող, երբ անմիտ հարցեր են տալիս. չէ՞ որ գյուղի ամեն մի տան էլ կարաս կա:

— Կարաս է,— պատասխանեց Հրանտիկը:

— Մենք էլ սրանից ունենք,— ասաց Պետրոսը:— Միայն թե հարյուր անգամ ավելի մեծ:

Նա այդպիսի սովորություն ուներ, միշտ պարծենում էր: Նրան որ հավատան, իրենց ամեն ինչը հարյուր անգամ լավ է, մեծ է ու գեղեցիկ:

— Մերը զրնգում է,— ասաց Հրանտիկը:

— Ո՞նց է զրնգում:

— Փայտով որ խփում ես, զրնգում է: Ա՜յ, ակա՜նջ դիր,— ասաց Հրանտի-

կը և թեթևակի խփեց կարասի կավե կողին:

Թեթևակի զնգոց լսվեց:

— Տուր ե՛ս խփեմ,— ասացի ես, վերցրի փայտը Հրանտիկից և ավելի ուժեղ խփեցի կարասին:

Ավելի բարձր զնգոց լսվեց:

— Ամբո՛ղջ ուժով խփիր,— առաջարկեց Պետրոսը:

Ես կասկածանքով նայեցի նրան, հետո եղբորս:

— Ավելի՛ ուժեղ խփիր: Զրնգոցը գյուղը կբռնի,— վրա բերին Պետրոսն ու Հրանտիկը:

Ես տարա-բերի և ինչքան ուժ ունեի հասցրի կարասին: Խլացուցիչ ճրթոց լսվեց... և կավե կարասը զրնգոցով կտոր-կտոր եղավ: Մի պահ մենք կանգնել էինք՝ վախեցած հայացքներս կարասի կտորտանքին հառած:

— Վա՜յ, էս ի՞նչ արինք,— սարսափով գոչեց Հրանտիկը, բերանը երկու ձեռքով փակելով:

— Հիմա տատը ձեր հախից կգա,— գլուխն օրորելով և ներքևի շրթունքը կծելով ասաց Պետրոսը:

Այդ ժամանակ պարսպի մյուս կողմից մայրը Պետրոսին կանչեց և նա գնաց:

Ինկապես որ ես շատ վախեցա: Բայց այդ խոհեքին հո չէի՞ ցույց տա, որ վախից ծնկներս դողում են:

— Վա՜յ, էս ի՞նչ արինք,— անվերջ կրկնում էր Հրանտիկը:

— Դե, հերի՛ք է նվնվաս,— ասացի ես ձեռքերս գրպաններս խրելով:

— Նանը էլ քեզ չի թողնի, որ գաս հետս խաղաս,— մղկտում էր եղբայրս:

— Քեզ ասացի հերի՛ք է:

Ես արդեն ասել եմ, որ այդ ամառ ես ապրում էի մի տատիս, իսկ եղբայրս մյուս տատիս մոտ, բայց մենք ոչ մի օր առանց իրար ապրել չէինք կարող:

— Գևո՛րգ,— հանկարծ աշխուժացավ Հրանտիկը,— արի՛ նանին ասենք, որ կարասը Պետրոսն է կոտրել, հա՞: Հո նրան չի՞ ծեծելու: Շատ-շատ՝ կբոգացատվի նրա մորը, կգոռգոռա ու կհանգստանա: Եվ հետո նա չէ՞ր, որ ամբողջ ժամանակ դրդում էր՝ ուժե՛ղ խփիր, հա ուժեղ խփիր...

— Ճիշտ է, եթե նա չլիներ...— մտախոհ համաձայնեցի ես:— Բայց, ախր, կարասին խփողը ես էի, է...

Այդ պահին դռնակը ճռռաց և բակ մտավ նանը:

— Էս ինչո՞ւ եք սսկվել:— Տատը կասկածանքով նայեց ինձ ու եղբորս:— Էլի մի բա՞ն եք արել:— Հայացքը բակում պտտելով, նա հանկարծ նկատեց կարասի կտորտանքը: Ես չգիտեմ, թե ինչ էր կատարվում Հրանտիկի հոգում, բայց իմ ներսում կարծես ինչ-որ բան կտրվեց ու ընկավ:

— Վա՜յ, կարա՛սս,— ծղրտաց նանը, բռնելով գլուխը:— Հորիցս ստացած բաժինքիս կարասը: Վա՜յ, օ՜ձը կծի ձեզ: Էս ո՞ւր է իմ մեծ փայտը: Հիմի էնպեսի ջարդ տամ ձեզ, որ մինչև կյանքներիդ վերջը չմոռանաք:

— Վա՜յ, նանի՛, մեզ մի՛ ծեծիր, մի՛ ծեծիր,— Հրանտիկը ձեռքերը բարձրացրեց գլուխը պաշտպանելու:

Նանի բերած փայտը տեսնելուն պես, ես ինձ համար էլ անսպասելի գոռացի.

— Նանի՛, կարասը Պետրո՛սն է կոտրել, Պետրո՛սը:

Ազնիվ խոսք, ինքս էլ չգիտեմ, թե ինչպես բերնիցս թռավ այդ խոսքը: Կարծես ոչ թե ես, այլ ուրիշը գոռաց:

— Ասում ես Պետրոսն է կոտրե՞լ:

Մի վայրկյան նանը սառավ տեղում, կարծես մտմտալով, թե նախ ում գլխին թափի իր զայրույթը և, ըստ երևույթին վճռելով, որ ես ու եղբայրս ձեռքի տակ



ենք և կարող ենք միշտ էլ ստանալ մեր բաժինը, փայտը բարձրացրած սուրաց հարևան բակը:

Մենք տեսնում էինք այն ամենը, ինչ կատարվում էր Պետրոսենց բակում: Ես ու Հրանտիկը, մեխված պես, կանգնել էինք անշարժ:

— Ախչի Անու՛շ, մի դու՛րս արի տեսնեմ,— ճչաց նանը:

— Ի՞նչ է պատահել, Սոնա՛ մորաքույր,— դուրս եկավ Պետրոսի մայրը: Նրա ձեռքերը խմորոտ էին:

— Քո անպիտան տղան կոտրել է կարասս: Իմ օժիտի կարասը:

— Իմ տղա՞ն:

— Ե՞ս,— մոր կողքին կանգնած Պետրոսը զարմանքից աչքերը չռեց:

— Մի սրա՛ն տեսեք, դեռ անամոթաբար էլ հրաժարվում է,— գոռում էր նանը:— Հիմի ես ինչի՞ մեջ դնեմ իմ թթուն, հը՞: Ի՞նչ ես կանգնել-մնացել, Անու՛շ: Բռնի դրան շան ծեծ տուր, է՛... Վա՛յ, աստվա՛ծ, իմ ո՞ր մեղքի համար դու ինձ էս տեսակ հարևաններ ես տվել:

— Ես չեմ կոտրել, մայրի՛կ: Չեմ կոտրել,— դողդոջուն ձայնով ասաց Պետրոսը, թաքնվելով մոր թիկունքում:

Հանկարծ ես ինձ շատ վատ զգացի: Տհաճ, զզվելի մի զգացում համակեց

ինձ... Նայեցի Հրանտիկին: Նա հայացքը փախցրեց:

— Ինչի՞ ես սպասում, Անու՛շ: Ինչու՞ չես փայտը կոտրում անպիտան տղայի մեջքին,— չէր հանդարտվում նանը:

Երևում էր, մայրը չէր ուզում պատժել տղային: Նա իր միանձնարն էր:

— Ես նրա հետ կխոսեմ, Սոնա մորաքույր,— մեղավոր ասաց նա:

— Խոսելը ո՞րն է, մի լավ քոթակի:

Մայրը ակամա շուռ եկավ Պետրոսի կողմը, ձեռքը վրա բերեց.

— Էդ ինչու՞ ես կոտրել, հը՞...

Պետրոսն այնպիսի տեսք ստացավ, ասես սրտի գդալին էին խփել: Բերանը բացվեց, դեմքը ճերմակեց:

Ես առաջ նետվեցի:

— Կարասը ե՛ս եմ կոտրել: Նրան մի՛ ծեծի, Անու՛շ մորաքույր:

Մի ակնթարթ նանն ու մորաքույր Անուշը զարմացած հայացքները հառեցին ինձ: Բայց հաջորդ վայրկյանին... Ես նանի աչքերում այնպիսի բան կարդացի, որ թողի ու փախա... Նանը փայտը ձեռքին ընկավ ետևս.

— Վա՜յ, է՛շը քացի տա քեզ: Ես քեզ խաբել ցույց կտամ: Ես քեզ...

Խոսք չկա, նանը գյուղի ամենամարտական ու ամենաարագավազ տատն էր, բայց միևնույն է, չէր կարող հասնել իմ ետևից: Ես տան ետևն եմ հասել, նա դեռ պատշգամբի առաջ է: Ես արդեն պատշգամբի մոտ եմ, իսկ նրա գոռում-գոչյունը տան ետևից է գալիս: Հարյուր անգամ տան քուրջը պտույտ տալուց հետո նա, ծանր շնչելով, վերջապես կանգ առավ: Քրտինքի մանրիկ կաթիլները թափվում էին ճակատը զարդարող արծաթե դրամների տակից: Մեղքս եկավ: Ես կանգ առա անվտանգ տարածության վրա:

— Գնո՛րգ...— դժվարությամբ շունչը տեղը բերելով ասաց նա:— Գնո՜րգ...

Այսքան հեռավորությունից կարելի էր սկսել խաղաղ բանակցություններ:

— Դու... դու ես կոտրե՞լ կարասը:

— Հա:

— Դու ինձ խաբեցի՞ր, որ ասիր, թե Պետրոսն է կոտրել:

— Հա:

— Բա էլ ինչու՞ չես թողնում մի երկու անգամ հասցնեմ քեզ, որ սիրտս հովանա:

Եվ այստեղ, այս խոսքերից հետո, որ նանն ասաց քիչ աղերսական տոնով, ուզում եք հավատացեք, ուզում եք՝ չէ, ես մոտեցա նրան, ձեռքերս հենեցի ծնկներիս, կռացա ու մեջքս դեմ արի նրան:

— Սա՝ կարասը կոտրելու համար: Սա էլ՝ քո մեղքը Պետրոսի վրա գցելու համար:

Ես այնպես էի գոռում, ասես ինձ մորթում էին, թեպետև ցավը տանելի էր:

Նախ և առաջ, ես ուզում էի նանին ցույց տալ, որ իզուր չէր նա հարյուր անգամ պտույտ տվել տան շուրջը ինձ բռնելու փորձ անելիս, իսկ երկրորդը, ամենագլխավորը, ուզում էի, որ հարևան բակում Պետրոսն ու իր մայրիկը լսեն իմ ճիչը:



ՓՈՔՐԻԿՆԵՐԻ ՀԱՄԱՐ

ՄԱՔՍԻՄ ՈՍԿԱՆՑԱՆ

# ԾԻՏԻԿԻ ԵՐԳԸ



Ինձ ասում են Ճստիկ ծիտիկ,
Ծիտիկ-միտիկ, Կարմիր տոտիկ,
Թևեր ունեմ նախշուն, նախշուն...
Երգ եմ ասում գարուն, աշուն,
Երգ եմ ասում ամբողջ տարին
Թփերի մեջ ու ծառերին:

Իմ երգում կա առվակի ձայն,
Հովի շշուկ, խշշոց ծառի,
Ծլվլում եմ քաղցր ու բարի,
Ա՜յ, հենց այսպես ծտավարի:

Թեև մեկ-մեկ քար են նետում,
Սակայն, գիտեմ, սիրում են ինձ
Երեխաները իմ տարեկից...



# Ո՞Վ Է ՈՒԺԵՂԸ



Սահադաշտում մի այծիկ,
Զրը՜խկ, ընկավ սառույցին:

— Ի՜նչ ուժեղն ես, պսպղա՛ն,
Չես թողնում մի լավ սղամ:

— Ուժեղ է նա, ով հեռվից
Հալում, ջուր է դարձնում ինձ:

Սիրուն դունչը պարզեց վեր
Ու մկկաց այծը մեր.

— Բարև՛, մե՛ծ մայր, ասա՛ ինձ,
Դո՞ւ ես ուժեղն ամենքից:

— Ուժ ունենար մայրը ձե՞ր,
Ամպը նրան կծածկե՞ր:





Նկ. ԿԱՐԵՆ ՍՄԲԱՏՅԱՆԻ

Այծը տեսավ մե՜ծ ամպին.

— Այսքան թույլ-մույլ և ուժե՞ղ,
Նույնիսկ արևն է տուժել:

— Թե ուժ լինեը, ա՜յ այծիկ,
Քամին ինձ չէր հալածի:

Այծը գնաց քամու մոտ,
— Դո՞ւ ես ուժեղն, աղմկո՛տ:

— Քամին ուժեղ թե լինե՜ր,
Սարը ճամփեն կփակե՞ր:

— Սա՛ր, սա՛ր, բա՜րձր սար,
Ուժ կա՞ քոնին հավասար:

— Իմ մեջ մեծ ուժ լիներ թե՜,
Գլխիս արծիվ կնստե՞ր:

— Արծի՜վ, արծի՜վ, երկնի զարդ,
Մտքով ո՞վ մի ակնթարթ
Չի սավառնում քեզ նման,
Դու ես ուժեղն անպայման:

— Մարդու միտքն է, ի՛մ սիրուն,
Ինձնից էլ վեր սավառնում:
Միտքն է, միտքն է ամեն ուժ
Իր մեջ տեսնում վաղ թե ուշ:
Միտքն է ուժեղն ամենից,
Անգամ մարդուց՝ իրենից:




Այս խորագրի տակ այսուհետև դուք կկարդաք մեր ընթերցողների ուղարկած նյութերը իրենց մասին, նաև իրենց դպրոցի, ջոկատի, տան, իրենց շրջապատի մարդկանց ու ընդհանուր հետաքրքրություն ներկայացնող նրանց արարքների մասին: Մասնակցելու ենք հրավիրում մեր բոլո՛ր ընթերցողներին:

# ՄՆԱՑԵԼ Է ՄԵԿ ՏԱՐԻ

Մեկ տարի է մնացել, որ ավարտեմ դպրոցը: Եվ ես ավելի ու ավելի հաճախ եմ խորհում, թե ինչի եմ ընդունակ, ինչ ձգտումներ ունեմ և կարող եմ, արդյոք, հասնել իմ ձգտումների իրագործմանը: Այս հարցերի պատասխանը ես պետք է գտնեմ այժմվանից:

Մի բանում հաստատ համոզված եմ, որ համառ և հետևողական աշխատանքն անպայման կհասցնի լավ արդյունքի: Գիտեմ, որ իր առջև ազնիվ նպատակ դնելու և այդ նպատակին հասնելու միջոցը համառ աշխատանքն է: Բոլոր նշանավոր մարդիկ աշխատանքի շնորհիվ են նվաճել բարձունքներ: Միայն աշխատանքի շնորհիվ կկարողանամ պետք գալ սիրելի հայրենիքին՝ այն ավելի ծաղկեցնելու ճանապարհին:

Ես շատ եմ սիրում պոեզիան: Բանաստեղծություններ գրելու փորձեր եմ անում: Արդյոք կա՞ է իմ ուղին: «Պիոներ կանչում» տպագրված բանաստեղծությունս ինձ շատ ոգևորեց: Բայց ամեն անգամ, երբ ձեռքս եմ առնում Իսահակյանի, Թումանյանի և մյուս դասականների գրքերը, ես ինձ զգում եմ շատ անզոր՝ բարձր թռչելու փորձերիս համար: Զգում եմ, որ օվկիանոսից հազիվ կաթիլներ եմ վերցրել:

Այո՛, դժվար է, բայց ես համառորեն կձգտեմ գտնելու իմ տեղը կյանքում, իմ ջանքերը միացնելու բոլոր նրանց ջանքերին, ովքեր շենացնում են հայրենի երկիրը:

**ԿԻՄԱ ՄԱՐՏՈՅԱՆ**
**Արարատի շրջ., գ. Ավշար**

# ՀԱՐՑ և ՊԱՏԱՍԽԱՆ

Մեր դասարանում հայտնվեց մի հարցաթերթիկ: Ընկերուհիս արտագրեց և բաժանեց մեր դասարանցիներին, որ պատասխանեն հարցերին: Շուտով այդպիսի հարցաթերթիկ հայտնըվեց ամեն մեկի մոտ: Դըրանով տարվեց մեր ամբողջ դասարանը: Հետաքրքիր է, երբ դու հարց ես տալիս, քեզ պատասխանում են: Մարդու մասին ավելի շատ բան ես իմանում:

Մեր տղաներից մեկի առաջարկած հարցաթերթիկում ես կարդացի այսպիսի հարց. «Ինչի՞ համար ես դու ապրում»: Սկզբում ուզեցի խիստ, մինչև իսկ կոպիտ պատասխան գրել. «Որպեսզի ծոծրակիդ հասցնեմ, եթե ավելորդ հարց տաս»: Բայց ժամանակին զսպեցի ինձ և գրեցի այն, ինչ անկեղծ մտածում եմ. «Որպեսզի մեկնումեկը դրանով լավ զգա իրեն»:

Իսկ տանը լրջորեն մտածեցի, թե ում համար է լավ, որ ես աշխարհում կամ՝ ընկերունե՞ս, մայրիկի՞ս, տատիկի՞ս: Իհարկե: Հրաշալի է, երբ ապրում ես և գիտես, որ դրանով ոմանց ուրախացնում ես: Իսկ ուրիշ է՞լ ինչի համար եմ ապրում: Որպեսզի լավ լինի իմ կողքին եղողների համար: Իսկ որպեսզի լավ լինի նրանց համար, հարկավոր է, որ ես լինեմ բարի, աշխատասեր, որքան կարելի է օգտակար լինեմ բոլոր մարդկանց:

Ես այսպես եմ մտածում: Իսկ դու՞:

ՆԻՆԱ ՎԻՏՈՒԽԻՆԱ
Մոսկվա






● Մեկ մետր երկարություն և 10 կգ քաշ ունեցող հարավաֆրիկյան այծեղջերուն հեշտությամբ կարող է թռչել 7 մետր բարձրություն:

● Բոժոժավոր օձերը ջերմաստիճանի տարբերությունը զգում են մեկ հազարերորդական աստիճանի չափով:

● Ձղջիկի սիրտը ամենալարված ժամանակ բաբախում է մինչև րոպեում 880 անգամ, իսկ ձմռանը, քնած ժամանակ՝ 16: Սրտի բաբախման այդպիսի տարբերություն հանգստի և լարվածության ժամանակ ոչ մի կենդանու հատուկ չէ:

● Հայտնի է, որ ուղտը կարող է ապրել առանց ջրի երկու շաբաթ: Այդ նրանից է, որ ուղտը ջրի պաշարը պահում է իր սապատում որպես ճարպ: Անջուր անապատներում ճարպը նա նորից վերածում է ջրի: Ուղտը շատ խնայողաբար է գործածում ջուրը: Ամենաշոգ օրերին անգամ նա չի քրտնում և բերանը միշտ փակած է պահում, քանի որ բաց լինելիս շատ ջուր է գոլորշիանում: Ուղտը շատ շուտ է հարմարվում շրջապատող միջավայրին: Ամառվա շոգերին ուղտի մարմնի ջերմաստիճանը հասնում է 40 աստիճան տաքության, այդ պատճառով էլ նա շոգ չի զգում, իսկ գիշերները իջնում է 34 աստիճանի և նրա համար ցուրտ չէ:

● Սովորական մեղուն մի վայրկյանում թափահարում է թևերը 200 անգամ, իսկ աղավնին միայն 9 անգամ:



# ԵՐԲ ՎԵՐՋԱՆՈՒՄ Է ԽՈՍՔԸ, ՍԿՍՎՈՒՄ Է ԵՐԱԺՇՏՈՒԹՅՈՒՆԸ

ՍՎԵՏԼԱՆԱ ՆԱՎԱՍԱՐԴՅԱՆ

## 4. ԱՍՈՐԻՔ, ՄԻՋԱԳԵՏՔ

Մերձավոր արևելքի մյուս վառ և ինքնատիպ երաժշտական մշակույթը ասորականն է: Նրա քաղցրահնչյուն մեղեդիները դեռևս 2.000 տարի մ. թ. ա. տարածվել են Արևելքի երկրներում, թափանցել Հունաստան: Վաղ միջնադարի բյուզանդական հիմներում, Արևմտյան Եվրոպայի պատարագային երաժշտության մեջ նկատելի է հին ասորական երաժշտության ազդեցությունը: Ասորիքը՝ հնգալար և յոթնալար քնարի, կրկնակի հոբոյի (փայտյա փողային գործիքի տարատեսակ), հնարավոր է, նաև բազմալար տավղի հայրենիքն է:

Մ. թ. ա. 4—3-րդ հազարամյակներում Ասորիքի գեղարվեստական մշակույթը հիմնականում զարգացել է Միջագետքի երկրների քաղաքակրթության զարգացմանը զուգընթաց և մ. թ. ա. 2—1-ին հազարամյակներում կրել է մասամբ եգիպտականի ազդեցությունը: Ասորական ինքնատիպ երաժշտական մշակույթի ստեղծմանը մեծապես նպաստել են փյունիկեցիները, որոնք մ.թ. առաջ 1-ին հազարամյակում պետություն են հիմնել ասորական տարածքի ծովափնյա մասում (ի դեպ՝ իր ուրույն, բարձր զարգացած քաղաքակրթությամբ): Մեծ էր նրանց դերը ասորական երաժշտության տարածման գործում: Շնորհիվ անդրծովյան առևտրի, փյունիկեցիները նաև լայն մշակութային կապեր են հաստատել տարբեր երկրների հետ: Ամենուր հռչակված էր փյունիկյան Տյուրոս և Սիդոն քաղաքների երաժշտական արվեստը, որը տարբերվում էր խոր և տպավորիչ զգացմունքայնությամբ: Որոշակի տեղեկություններ են պահպանվել Միջագետքի պետությունների, Տիգրիս և Եփրատ գետերի ավազանում տեղավորված Շումերիայի, Բաբելոնի, Ասորեստանի երաժշտական մշակույթի վերաբերյալ: Մ. թ. առաջ գրեթե չորրորդ հազարամյակում են ստեղծել շումերացիները իրենց առաջին երգ-լեգենդները, ողբերը, աշխատանքային, քնարական, ծիսական և այլ երգերը: Բարձր է եղել նրանց գործիքային արվեստը: Առավել տարածված էին աղեղնաձև, ե-

ռանկյուն տավիղները, մեծ թմբուկները, փայտյա փողային գործիքները: Հեռավոր այդ ժամանակներից մեզ է հասել շումերական արվեստի եզակի նմուշ՝ տախտակի փոքրիկ կտորի վրա շումերական և աշշուրական լեզուներով արձանագրված բանաստեղծական հատված, կողքին՝ սեպաձև նոտագրություն: Գիտությանը մինչև այժմ հայտնի ամենավաղ նոտագրությունն է այն, որ գերմանացի տեսաբան Կուրտ Զաքսի կարծիքով վոկալ (երգային) մեղեդու տավղային նվագակցության գրառում է:

Հին Բաբելոնում, ինչպես Եգիպտոսում, տարածված էին պասիոնները, որոնց հիմքում դարձյալ վերակենդանացող բնության գաղափարն էր: Մասսայական ժողովրդական այս արարողությունները կապված էին անեղ աստծո՝ Մարդուկի և գարնան պատանի աստված Թամուզի պաշտամունքի հետ: Դրանցում տեղ գտած կենցաղային տեսարանները, քնարական երգերը, ողբերգերը, ինչպես եգիպտական պասիոններում, արտահայտում են արվեստի այդ ստեղծագործության կապը մարդկանց ամենօրյա կյանքի հետ: Հին բաբելոնյան պոեզիայում թերևս առաջին անգամ արծարծվել է երաժշտության անսահման զորության գաղափարը, այն, որ երաժշտությունը նույնիսկ ընդունակ է կենդանացնել մահացած մարդուն: Դարեր անց կենարար արվեստի կերպարը վերաստեղծում են հին հույները «Օրփեոս և Էվրիդիկե» լեգենդում:

Մեծ ճոխությամբ ու զարդանախշային բնույթով էր աչքի ընկնում Հին Բաբելոնի պաշտամունքային և պալատական երաժշտությունը: Այն ուղեկցել է կրոնական ծեսերն ու թագավորական ընդունելությունները, շքերթները, խրնջույքները (ի դեպ առավել շքեղության է հասել Նոր Բաբելոնի ժամանակաշրջանում՝ Նաբուգոդոնոսորի թագավորության ժամանակ): Ստեղծելով մարդկային հատկանիշներով օժտված աստվածներ, բաբելոնցիք պարզամտորեն հավատացել են, թե երաժշտությունը արթնացնում է աստվածներին և շարժում նրանց գութը մարդու հանդեպ:

Բաբելոնի առաջին երաժիշտ-պրոֆեսիոնալները քրմերն էին: Մեծ էր նրանց ազդեցությունը, հատկապես ստրկատիրության վաղ շրջանում, ժողովրդական մասսաների վրա: Հետագայում, երբ երաժշտությունը մուտք է գործում ստրկատերերի կենցաղը, երեվան են գալիս ստրուկ-երաժիշտները: Երգովնվագով տիրոջը զվարճացնելը նրանց ուղղակի պարտականությունն էր:

Երաժշտությամբ շատ էին սիրում զարդարել իրենց կյանքը Ասորեստանի թագավորները, քրմերը, ստրկատերերը: Մ. թ. առաջ 2-րդ հազարամյակից սկսած այդտեղ էին հավաքվում Առաջավոր Ասիայի լավագույն վարպետ կատարողները: Ցավոք, մեզ չի հասել Ասորեստանի երաժշտության շատ թե քիչ ինքնատիպ նմուշ: Օգտըվելով այլ ժողովուրդների երաժշտական առաջընթացի պտուղներից, հավանաբար, նա ինքը չի ստեղծել վառ անհատականությամբ տարբերվող երաժշտական մշակույթ: Առավել ևս հետաքրքիր է, որ ասորեստանցիներին է վերագրվում յուրօրինակ մի տեսության մշակում (մասամբ նման եգիպտականին), համաձայն որի երաժշտության մեջ էլ տիրում են բնության երևույթներին բնորոշ թվային հարաբերությունները: Տեսությունը կապված էր աստղագուշակության հետ (հնում տարածված գաղափար էր, համաձայն որի երկնային մարմին-

ներն են ղեկավարում մարդու կյանքը, ճակատագիրը, նրանք են կանխորոշում պատմական դեպքերի ընթացքը):

Մերձավոր արևելքի հնագույն երաժշտական օջախներից է Պաղեստինը իր հռչակված երգչախմբային արվեստով, ուրույն, անկրկնելի նվագարանով: Երաժշտական գործիքներից հիշատակենք «խոսոսրա» արծաթե շեփորները, շեփորի տեղ գործածվող խոյի եղջյուրները, այսպես ասած «շոֆարները», որոնց հուժկու ձայնից իբր թե քայքայվում էին թըշնամու ամրոցները (այստեղից է «երիքովյան շեփոր[1]» արտահայտությունը) շվի— «խալիլը», «կիննոր»—քնարը, հարվածային պղնձյա ծնծղաները, ըստ պաղեստինցիների՝ կիմվալները և այլն:

Երաժշտությունը չափազանց տարածված էր հին Պաղեստինում: Խմբերգերով, ծնծղաների ուղեկցությամբ դիմավորում էին ռազմի դաշտից վերադարձող զինվորներին, երաժշտության տակ գուշակություններ էին անում մարգարեները, երաժըշտությամբ էին ուղեկցվում ծեսերն ու եկեղեցական արարողությունները, երաժշտությամբ զարդարում կենցաղը: Երաժշտությամբ և երգեցողությամբ ժամանակին մեծ համբավ էր ստացել Սողոմոնի առասպելական տաճարը: Ինչպես վկայում են այդ ժամանակաշրջանի գեղարվեստական հուշարձանները, Պաղեստինի ժողովուրդը օժտված էր վառ երաժըշտականությամբ: Նրա երաժշտական մշակույթը, որ հազարամյակների պատմություն ունի, որոշակի ազդեցություն է գործել Բյուզանդիայի, հետագայում նաև Արևմըտյան Եվրոպայի երաժըշտական մշակույթի վրա:

1 Համաձայն առասպելի պաղեստինյան Երիքով քաղաքը (մ. թ. ա. II հազարամյակ), քարուքանդ եղավ իսրայելական զորքի հնչեցրած գերբնական փողի ձայների տարափից:

## ԾՈՎԸ ԵՎ ՄԱՆՈՒԿՆԵՐԸ

ԳԱԳԻԿ ՈՍԿԵՐՉՅԱՆ

Մանուկներ էին ծովափին խաղում,
Վազվզում փափուկ ավազի վրա,
Ալիքները վեհ երկինք բարձրանում
Ու փլվում էին ոտքի տակ նրանց:

Իսկ մանուկները մոտենում վազքով,
Քարկոծում էին ծովն ու ալիքներ,
Եվ փախչում էին զվարթ ծիծաղով,
Երբ մեծ ալիքը խոյանում էր վեր:

Ալիքը նրանց բռնել էր ուզում,
Նրանք՝ կանգնեցնել ալիքին ահեղ,
Սակայն մի խաղ էր դա իրականում,
Որ խաղում էին ծովն ու մանուկներ:



# «ԽՈՐԻԿԻՍ ՏՎԵՔ...»

ՌՈՒԲԵՆ ԱՆՂԱԼԱԹՅԱՆ

Իմ հարազատ Ախալցխայի մոտերքում մի գյուղ կա, Ծուղրուտ է անունը: Ընկած է լեռնապարի ստորոտին, իսկ շուրջը համատարած հարթություն է: Եթե կանգնեք ճանապարհի անկյունադարձին, ապա միանգամից մի քանի գյուղ կտեսնեք, բոլորն էլ հայկական: Տեսանելի է և քաղաքը, հայկական ավերված եկեղեցիներով, հեռուստաաշտարակով ու երկաթգծի նրբահյուս թելերով:

Ես Ծուղրուտ էի գնում տեսնելու 10-րդ դարի ձեռագիր Ավետարանը: Իմ ժամանելուց 10—15 րոպե անց արդեն գյուղում բոլորը գիտեին իմ գալու նպատակը: Ինձ ուղեկցում էր իմ ծանոթ գեղջկուհին՝ Սվետիկ անունով: Մեզ ուղղված հայացքներում ես տեսնում էի հետաքրքրասիրություն ու մի քիչ էլ բարի հեգնանք, որն այնքան բնորոշ է մեր գյուղացիներին: Նրանք, այդ արևակեզ ու ջլապինդ մարդիկ, օժտված են բնածին խելքով ու նրբանկատությամբ, իսկ նուրբ հեգնանքը նրանց կերպարին մի առանձին հմայք է տալիս:

— Ուրեմն դուք Հովհաննեսի մո՞տ եք գնում,— իմ ուղեկցուհուն է դիմում երիտասարդ մի գեղջկուհի, որ շիտակ քայլվածքով դեպի Աղբյուրն էր իջնում:

Հովհաննեսը գիրքն է՝ 974 թվականի մի ձեռագիր, որի մասին խոսում են իբրև կենդանի մարդու:

Ահա և երկհարկանի տունը, ուր գտնվում է ձեռագիրը. դռները փակ են, Սվետիկը գյուղի աշխույժ տղաներից մի երկուսին ուղարկում է դաշտ՝ տանտիրոջը կանչելու: Մինչև նրա գալը մենք դիտում ենք գյուղը:

Մոտենում ենք գյուղի դպրոցին. հին միահարկ մի շինություն: Տասնամյակ է դարձել վերջերս, և գյուղում հպարտանում են դրանով: Կարդում եմ ցուցանակը. «№ 1 հայկական միջնակարգ դպրոց»:

Իջնում ենք ներքև: Փոքրիկ մի եկեղեցի, շուրջը դարավոր ծառեր: Կան և կոճղեր: Մի՞թե վերջերս են սղոցել, թա-

խիծ է իջնում վրաս: Տխրում եմ այդ ծառերի ու կոճղերի համար, որոնք ինձ հանգած օջախներ են հիշեցնում: Թախիծս նկատելով՝ Սվետիկն ասաց.

— Այս ծառերի արմատները տարածվել, հասել էին եկեղեցու հիմքին, պատերը ճեղքեր են տվել:

Նայելով բավական նշմարելի ճաքերին, թախիծս կրկնապատկվում է:

— Աշնանային աշխատանքներն ավարտելուց հետո գյուղովի վերականգնելու ենք եկեղեցին,— ավելացնում է նա:

Եկավ տանտերը: Նա քայլում է արժանապատվորեն, բազուկներն հուժկու և արևակեզ են, հայացքը սուր ու վճիտ:

Հարգալից ու բարեկամաբար իրար ողջունելուց հետո բոլորս մտանք տուն ու բարձրացանք երկրորդ հարկ, նախօրոք հանելով կոշիկները: Ձախ կողմում դուռն էր, ուր գտնվում էր «Հովհաննեսը»՝ 1005-ամյա ձեռագիրը, որը, ինչպես հավատում և հավատացնում էին տեղացիները, իրենց գյուղի «պահապանն էր»:

Սենյակը փոքր էր, մեկ պատուհանով, դիմացի պատի մոտ՝ պահարան, որի մեջ երևում էր գիրքը՝ արծաթե դրվագով: Երբ ես ցանկություն հայտնեցի նայելու ձեռագիրը, տանտերը ինձ ու Սվետիկին խնդրեց դուրս գալ սենյակից: Երկու-երեք րոպեից հետո նորից ներս հրավիրեց:

— Կներեք, որ խնդրեցի դուրս գալ,— ասաց նա,— ազգանշանային հարմարանքն էի անջատում:

Ես, հավանություն տալով նրա զգուշավորությանը, հարցրի, թե այդ ազդանշանային համակարգը բավարար հզորություն ունի՞ արդյոք:

— Եթե նույնիսկ ամենահեռավոր դաշտում էլ աշխատելիս լինենք՝ կըլսենք: Եվ, աստված չանի, մեկը փորձի գողանալ, ամբողջ գյուղը ոտքի կըկանգնի ու կբռնի սրիկային:

Սենյակում մոմակալներ էին դրված, և մենք մոմեր վառեցինք: Տանտերը գիրքը դրեց սեղանին:

— Ինչպե՞ս է սա ընկել ձեզ մոտ, պետք է որ հետաքրքիր պատմություն ունենա,— հարցրի ես:

— Տատիս ասելով ինքը իբր թե երազում տեսնում է, որ այս գիրքը պըտըտվում է ջրի երեսին: Առավոտյան գնում է գետը և իրոք... վերցնում է գիրքը, բերում:

Բացում եմ... ու պարուրվում այն ներքին դողով, որ զգում ես, երբ իսկական արվեստի գործի ես հանդիպում: Այստեղ կար այն ամենը, ինչ բըխում է ժողովրդի էությունից. ամբողջականություն, նրբություն, հուզականություն:

Դեմքերը մարդկային են, ճշմարտացի, երևում է, որ կարինցի անհայտ նըկարիչը (իսկ ձեռագիրը դեռ հետազոտված չէ) խորապես ներթափանցել է մարդկային հոգու այն գաղտնարաններըը, որոնք իսկական արվեստագետներին են մատչելի:

Ես շոշափեցի անողորկ մագաղաթը:

— Ջրում է այդպես կծկվել,— բացատրեց տանտերը,— ջրի մեջ է մնացել երկար:

Մտքումս քմծիծաղեցի այդ լեգենդի վրա:

Նայում էի 350-ից ավելի էջերը, իսկ գլխումս անվերջ հարցեր էին ծագում. ովքե՞ր, ինչու՞ 974 թվականին արտագրել են այս ձեռագիրը՝ օգտագործելով ավելի քան 100 ոչխարի կաշի և էլ ավելի շատ ժամանակ: Եվ այդ աշխատանքն արել են մի այնպիսի քնքշանքով ու ջանասիրությամբ, որ հավասարազոր է կամուրջի շինարարությանը, սա էլ մի կամուրջ է՝ անցյալը ապագային կապող:

Տանտերը պատմում է, որ շարունակ Մատենադարանից գիտնականներ են գալիս, որ տանեն գիրքը, գալիս են և Թբիլիսիից:

— Նրանք համատացնում են, որ գիրքը հուսալի ձեռքերում կլինի,— շարունակում է նա,— դա այդպես է, չենք ժխտում: Այն, ինչ պատկանում է մեզ, այսինքն մեր գյուղին, պատկանում է հայ ժողովրդին: Բայց չէ՞ որ մեզ համար էլ է դժվար ձեռագրից բաժանվելը...

Այս խոսքի վրա նաահա թե ինչ է պատմում, որ իր ասելով, պատահել է հարևան գյուղում: Գիտնականները եկել են մեկից նման մի գիրք տանելու: Սկսել են ամաչեցնել պառավին, ում մոտ որ գիրքն էր: Շատ որ նեղել են, պառավը լաց է եղել և արցունքների միջից ասել. «Որ այդպես է՝ դուք էլ իմ Խորիկին տվեք ինձ: Խորիկիս տվեք»: Գիտնականները շվարած իրար են նայել. ի՞նչ Խորիկ, ու՞մ մասին է խոսքը: Պառավը թե՝ «Մի ձեռքումս գիրքն էր, մյուսում՝ Խորիկս: Յաթաղանի առաջն ընկած, երկրից փախչում էինք: Խորիկս ճամփին մահացավ, Խորիկիս թաղեցի, գիրքը՝ Խորիկիս փոխարեն գրկած, փրկեցի բերի... Խորիկիս տվեք, գիրքն առեք տարեք, նա ինձ համար Խորիկիս փոխարինողն է»:

Տանտերը մի ծխախոտ վառեց: Նա հուզվել էր, բայց աշխատում էր թաքցնել: Տարեց մարդու առնական դեմքին մտահոգություն իջավ: Լռություն տիրեց, հետո, ավարտելով խոսակցությունը, ասաց.

— Իհարկե, կգա մի օր, այս ձեռագիրն էլ Մատենադարան կգնա: 1005 տարի է ապրում է, դեռ երկար կապրի, քանի աշխարհում կան մարդիկ, կա հայություն:






# ԴԱՍԱԿԱՆՆԵՐԻՑ ՈՎ ԻՆՉՊԵՍ ԷՐ ՍՏԵՂԾԱԳՈՐԾՈՒՄ

●

Ֆրանսիացի հանրահռչակ վիպասան ԱԼԵՔՍԱՆԴՐ ԴՅՈՒՄԱ—հայրը (1802—1870) գրում էր արտակարգ թեթևությամբ: Ստեղծագործելու համար չէր առանձնանում և կարողանում էր աշխատանքը շարունակել լիակատար հանգստությամբ՝ ոչ մի ուշադրություն չդարձնելով երբեմն իր շուրջը տիրող աշխուժությանն ու աղմուկին: Եթե նրա մոտ որևէ ծանոթ կամ բարեկամ էր գալիս՝ Դյուման մի կողմ էր դընում գրիչը. մի կես ժամի չափ զրուցում էր նրա հետ, ապա շարունակում այն տեղից, որտեղ կանգ էր առել: Մեծ վիպասանը հեռու էր բոլոր այն քմահաճություններից, որոնք սովորաբար հատուկ են եղել քիչ թե շատ նշանավոր գրողներին: Նա հավասար կենտրոնացմամբ կարողանում էր աշխատել ցերեկվա կամ գիշերվա բոլոր ժամերին: Նրա սկզբունքն էր՝ գրել ամեն օր, և ոչ մի բան չէր կարող խանգարել նրա երևակայության թռիչքներին:

Զարմանալի չէ, ուրեմն, որ նրա վեպերն էլ կարդացվում են այդպիսի թեթևությամբ ու չընդհատվող հետաքրքրությամբ: Այն հարուստ ժառանգությունը, որ նա թողել է մեզ, երևի, հենց այդպես էլ պիտի գրվեր:

●

Անգլիացի ֆիզիկոս և մաթեմատիկոս ԻՍԱՀԱԿ ՆՅՈՒՏՈՆԸ (1648—1727) հաճախ ներշնչվել է քնած վիճակում՝ երազի մեջ լուծելով այնպիսի մաթեմատիկական խնդիրներ, որոնց լուծման ճանապարհը արթուն ժամանակ ոչ մի կերպ չէր կարողանում գըտնել:

●

Գերմանացի բանաստեղծ ՖՐԻԴՐԻԽ ԳՈՏԼԻԲ ԿԼՈՊՇՏՈԿԸ (1724—1803) խոստովանել է, որ իր երգերից շատերը արդյունք են քնած ժամանակ համակած ներշնչանքի:

●

Գերմանացի պոետ, մտածող ու բնագետ ՅՈՀԱՆ ՎՈԼՖԳԱՆԳ ԳՅՈԹԵՆ (1749—1832) սիրում էր աշխատել ամուր փակված սենյակում, ուր չպիտի թափանցեր և՛ ոչ մի ձայն, նույնիսկ թարմ օդը, համակ լռության ու անձկության մեջ...

●

Գերմանացի պոետ, թատերագիր, արվեստի տեսաբան, պատմաբան, նոր ժամանակների գերմանական գրականության հիմնադիրներից՝ ՅՈՀԱՆ ՔՐԻՍՏՈՖ ՖՐԻԴՐԻԽ ՇԻԼԼԵՐԸ (1759—1805) իր բազմաթիվ մուսաներին կաշառելու համար դիմել է, թերևս, ամենատարօրինակ միջոցին. նա հանում էր կոշիկները և ոտաբոբիկ կանգնում սառույցի վրա...

●

Պակաս արտառոց չէր նաև անգլիացի վիպասան ՉԱՐԼԶ ԴԻԿԿԵՆՍԻ (1812—1870) սովորությունը, ներշընչման սանձերն իր ձեռքերում պահելու համար նա հինգ-տասը տող գրելուց հետո խմում էր մի բաժակ տաք ջուր...

Հավաքեց ՎԱՆ Դ—Ն

# ԱՂԲՅՈՒՐ

Գալիս է նա
լեռների միջով,
երկնքի ու ձյուների որդին։

Նրա անցյալն ընկած է
հեռու սարերում,
նրա ծնողները դեռ պառկած են
ամպեղեն վերմակների տակ՝
ձնծաղիկների կողքին։

Նրա հայացքի մեջ
դեռ չի հալվել
պաղ սարսուռը ձյունի,
նրա շուրթերին դեռ չի մարել
երգը սարերից բերած։

Ու թեև ժայռը բռնությամբ
մամուռ է դրել
նրա բերանում,
բայց նա երգում է էլի,
թափանցիկ հայացքը՝
ավազների մեջ։

Նկ. ԿԱՐԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆԻ



ԱՐԵՎՇԱՏ ԱՎԱԳՅԱՆ

# ԿԱՐՄՐԱԽԱՅՏ ՁԿՆԵՐԻ ԳԵՏԸ

Ջրապտույտի միջից
պղտոր հայացքով նայում է փրփուրը,
մի քարափ է ծնկել զառիթափին
ոտքը քարին խփած
ձկնորսի պես։

Այնտեղ, ուր ուռկանը լցված է
ամուր գլաքարերով,
ուր ժամանակը լողում է
հոսանքն ի վեր
ձկների արքան արդեն լսում է
զառիթափով իջնող
ոտնաձայների աղմուկը։

Երգելով գալիս են ձկնորսները
դեպի ծփանքը
կարմրախայտ ձկների,
տագնապով ետ է շրջվում արահետը
և ձորի գլխից
շարունակվում է երկնքի մեջ։



# ՍՈՍԻ ՊԵՏԻԿՅԱՆ

— Երբ Կիպրոսի Մելգոնյան կրթական հաստատությունն ավարտեցի, այնքա՜ն կփափագեի ուսումս շարունակել Հայաստանին մեջ, բայց այն ժամանակ սփյուռքի ուսումնատենչ երիտասարդությունը այդ հնարավորությունը չուներ,— ասում է Սոսի Պետիկյանը:

Հայկական բարեգործական ընդհանուր միությունը շնորհալի աղջկան հատկացնում է կրթաթոշակ, և նա մեկնելով Բեյրութ՝ սովորում է Ամերիկյան համալսարանում, հետևում գիտական ճյուղին, հատկապես մասնագիտանում քիմիայի մեջ:

Դասախոսները նրան համոզում են խորանալ այդ մասնագիտության մեջ: Բայց երիտասարդ հայուհուն ձգում էր մանկավարժական ասպարեզը: Եվ նա աշխատանքի է անցնում Բեյրութի Դարուհի Հակոբյան աղջըկանց միջնակարգ վարժարանը, նաև որպես քիմիայի ուսուցչուհի, հետո, երկար տարիներ տնօրինուհի, ապահովելով ոչ միայն ուսման բարձր մակարդակը, այլև հայկական, հայրենասիրական ջերմ մթնոլորտ:

Որպես Դարուհի Հակոբյան աղջկանց վարժարանի տնօրինուհի, նա սփյուռքահայ ուսուցիչների պատվիրակության հետ գալով ու շրջելով հայրենի երկրում, վերադարձավ և գրեց «Հայաստանը կնոջ մը աչքերով» ուղեգրությունների տպավորիչ շարքը:

Սոսի Պետիկյանի կազմակերպական բարձր ընդունակությունները, նրա նվիրումը սփյուռքահայ մատաղ սերնդի դաստիարակությանը, բարձր գնահատվեցին, և 1976 թվականից նա ընշանակվեց սփյուռքի ամենահին և լավագույն կրթական օջախներից մեկի՝ Կիպրոսի Մելգոնյան կրթական հաստատության տնօրինուհի: Գիշերօթիկ բարձրագույն միջնակարգ այս վարժարանում սովորում են տասնչորս երկրներից եկած երկսեռ պատանիներ: Նրանցից շատերը ավարտելով հաստատությունը, դառնում են խմբագիրներ, ուսուցիչներ, սփյուռքի հայ մշակութային կյանքի ակտիվ մասնակիցներ:

Նոյեմբերի վերջերին, Սովետական Հայաստանի 60-ամյակի առթիվ, Երևանում տեղի ունեցավ սփյուռքահայության ներկայացուցիչների ժողովը, որին մասնակցելու էր հրավիրված նաև Սոսի Պետիկյանը: Նա եղավ նաև մեր խմբագրության հյուրը և խնդրեց իր ողջույնը հաղորդել Հայաստանի բոլոր պիոներներին, մեր հայրենիքի ապագա կառուցողներին:

«Պիոների» խմբագրությունը իր կողմից ողջունում է Մելգոնյան կրթական հաստատության սան-սանուհիներին և նրանց ցանկանում հաջողություն ուսման մեջ:

Լուսանկարը՝ ԴԱՎԻԹ ՆԵՐՍԻՍՅԱՆԻ

# ԻՄ ԸՆԿԵՐ ՆԱՊԱԼՅՈՆԸ

ՀՐԱՉՅԱ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

Մինչև իմ ընկեր Նապալյոնի (Նապալյոնի, ոչ թե Նապոլեոնի) հայտնըվելը մեր փոքրիկ գյուղը երեք Նապալյոն էր ավելացրել աշխարհի հազարավոր Նապոլեոններին: Ի՞նչ Նապալյոններ էին: Ո՞վ կհամարձակվեր, ո՞ւմ մտքով կանցներ կրճատել նրանց անունը: Անդրանիկը հեշտությամբ Անդո էր դառնում, Տիգրանը՝ Տիկո, Աշխարհբեկը՝ Աշխո, Հայրապետը՝ Հայրո... Բայց ո՞ւմ մտքով կանցներ Նապալյոններից մեկնումեկին կոչել Նապո: Որպեսզի նրանց չխառնեին, վերին թաղի Նապալյոնին առանց քաշվելու ասում էին՝ Ջորի Նապալյոն, որովհետև տանաշենը մի անգամ ձիու քուռակին ասել էր՝ էս էշի քուռակը նոր ջորի լինի, ջորացու լինի: Էնպես էլ նա ինքն իր ձեռքով կնքվեց Ջորի: Մյուսին «Ջրատար Նապալյոն» էին ասում, որովհետև նրա նման անճար, աշխարհից անտեղյակ Նապալյոն որևէ գյուղում կամ քաղաքում դժվար թե լիներ: Երրորդին էլ «Մարշալ Նապալյոն» էին ասում, որովհետև քսանմեկ տարեկան արդեն օղակավար էր:

Պատերազմը դեռ չվերջացած, մեզ՝ մի քանի տկլոր խեղճ ու կրակների, հանդերից, մեղրատանձենիների վրայից ու մոռուտներից, տաք ակոսներից, հովիվների մոտից հավաքեցին ու տարան դպրոց: Դպրոցի ճամփին իմ ընկեր Նապալյոնի մերը գրկեց ինձ ու պատվիրեց. «Նապալյոնիս Նապալյոն կասես, ուրիշների նման դու էլ շաշ ու մաշ անուն չկպցնես: Դու բոյով ես, նրան պաշտպանիր»:

Երբ սկսեցին կարդալ մեր անունները, շատ ուրախացանք, որ էս աշխարհում մենք էլ անուն ունենք, որը սիրով արտասանում են մեր ուսուցիչները: Դասարանում երբ լսվեց իմ ընկերոջ անունը՝ Նապալյոն Դաղստանքշյան, դասարանում ընդհանուր փոթկոց բարձրացավ: Ուսուցիչը մեր գյուղացի չէր և ծանոթ չէր Դաղստանքշյան ազգանվանը, չգիտեր, որ իմ ընկեր Նապալյոնի պապերից մեկը մի հարմար տեղ լավ փչել է. «Վրա տվին, ինչ վրա տվին, ոնց որ ոչխարը՝ աղին: Նրանք վրա տվին, ես ասի համբերեմ, ձեն չհանեմ: Վրա տվին, ոնց որ ամպը սարին վրա կտա: Հա վրա տվին, հա վրա տվին...» Լսողներն էլ են վախենում, ստիպված ընդհատում են. «Էդքան վրա տա՞լ կլինի»: «Դուք միայն լսեք, ես գիտեմ ինչ եմ ասում: Որ տեսա շատ են համը հանում, ասի՝ ժամանակն է, ու ճանճի պես քշեցի բոլորին»: «Ո՞ւր քշեցիր» հարցրին: «Դաղստանի կողմերը» ասաց: Էնպես էլ դրանց ցեղին կոչեցին Դաղստանքշյաննանց:

Պատերազմը երբ ավարտվեց, մենք փոխվեցինք երկրորդ դասարան, մեր գյուղում բացվեց մանկապարտեզ:

Դպրոցում չարություն արա, ուսուցիչը դեռ բերանը չբացած՝ դու աչքերդ լցրու և խռոված, փոքրացած, մանկապարտեզի չէ, հենց օրորոցի երեխա դարձած, գնա ուղիղ մանկապարտեզ: Պատերազմից չեկածի երեխա ես: Ո՞վ չի ընդունի և ո՞վ չի պատերազմից չեկածի երեխայի համար մի կտոր հաց, մի աման ճաշ մի հնարով ստեղծի:

Երկրորդ դասարանն էլ էդպես անցավ, ու ես չհասկացա՝ դպրոցակա՞ն եմ, թե մանկապարտեզի երեխա: Իմ Նապալյոն ընկերոջ տեղը լինեի՝ դըպրոցից լրիվ կհրաժարվեի ու հա մանկապարտեզ կգնայի: Ինձ իմ բոյն էր խանգարում, իսկ նրան, փառք աստծու, խանգարող բան չկար, թիզ ու կես երեխա էր: Բայց արի տես, որ նա երեսը շրջեց մանկապարտեզից ու տղամարդու քայլվածքով գնաց ոչ թե դեպի Դաղըստանի կողմերը, այլ դպրոց: Իսկ ինձ ասացին՝ ամոթ չի՞, մեծ բոյդ առել ես, եկել մանկապարտեզ, փոքրերի բաժինն ես ուտում, էն մի թզաչափ Նապալյոնի չա՞փ էլ չկաս: Ստիպված ես էլ հրաժարվեցի մանկապարտեզից:

Որպեսզի մեր գյուղը պատմության մեջ չհիշվի իբրև ամենակարճ Նապալյոն ունեցող գյուղ, հարց բարձրացավ նորել Նապալյոն Դաղստանքշյանի անուն-ազգանունը: Նապալյոն Դա-

ղըստանքչյանը դարձավ Անուշավան Վարդազարյան (Վարդազար պապ էլ է եղել՝ համեստ, խելոք, աշխատասեր)։ Ազգանունը, պատկերացնո՞ւմ եք, կարգին կպավ։ Դաղստանքչյանը շարքից դուրս եկավ։ Բայց ցեղը մնաց որպես Դաղստանքչյանք... Մայրն էր միայն շարունակում նրան Նապալյոն ասել, և նրան հետևելով մենք՝ ընկերներս։ Նրա պես լեզու-բերան ունեցող էս աշխարհի երեսին ոչ մի Նապալյոն չի ունեցել։ Երկար լեզու ուներ, էնքան երկար, որ մեծերն ասում էին՝ լեզուն ընկնում է ոտների տակը։

Մի օր հեռավոր մի գյուղից իմ էս ընկեր Նապալյոն— Անուշավանին հասցնում են հիվանդանոց։ Եվ ի՞նչ սարսափելի լուրեր եկան իմ ընկերոջ մասին։ Մայրն ասում էր՝ մահվան դուռը հասավ, էլի ետ եկավ։ Դա ասես բավական չէր, հիմա էլ լսում ենք, թե իբր ամբողջ փոր ու փորը փորից դուրս են տվել, նորից ներս ածել, իբր թե՝ սիրտ, թոք ու ջիգյար խառնել են իրար... Ի՞նչ ցավ էինք ապրում։ Աշխարհի երեսին ոչ մի Նապալյոն էդ ցավին չէր դիմանա։ Ի՞նչ ցավ էինք ապրում։ Գյուղի տներում ինչ համով պատառ էր լինում, հասցնում էին նրանց տուն։ Ընկերոջս մայրը՝ Լուսնածիր մորաքույրը, ոնց էր տանջվում։ «Բա, էդ խիղճը մեռած բժիշկները, էդ իմ էն գեներալացու Նապալյոնիս քանի անգամ ճղճղատեցին, կտրատեցին։ Իմ շար ու շարման Նապալյոնիս»։

Վերջապես իմ ընկերոջը բերին հասցրին տուն։ Նրան տեսության էին գնում այնպես հանդիսավոր, որ ասես կռվի տարի էր ու կռվի դաշտից նոր զինվոր էր եկել։ Հավաքվում են նրա անկողնու շուրջը ու նա՝ իմ ընկերը՝ Նապալյոն Անուշավանը հավաքվածներին (մեր, մանուկ, ալևոր) պատմում է զարմանալի պատմություններ։ Ոնց են լըսում իմ ընկերոջ սլսլոցները։ Կռվի դաշտում միթևանի դարձած Թևանը համարձակվեց ընդհատել. «Այ երեխա, ոնց որ փչելիս լինես։ Դաղստանքչյան, հա՞..»։ Նապալյոնս շատ տղամարդավարի ասաց, որ ոչ մի սուտ իր արած պատմություններում չկա, որ... Թևանը չհամբերեց. «Ճիշտ է, քեզ մատաղ, սուտ չկա, բայց ճիշտ էլ չկա»։ Նապալյոնս շատ քաղաքավարի ասաց, թե ումից լսել է էս պատմությունները, հիվանդանոցում էր պառկած, ամոչեցի էր, անունն էլ Երվանդ էր... «Դե, այ Նապալյոն, նախապես ասա, որ ես՝ Նապալյոն Դաղստանքչյան-Անուշավան Վարդազարյանս հիվանդանոցում պառկած ժամանակ էս ինչ մարդուց լսել եմ էս ինչ պատմությունը, թե չէ դուրս է գալիս, որ քո տեսած, քո արածն ես պատմում»։ «Չէ՝ չէ, մի պոզեր, ես ժամանակ չունեմ երկար-բարակ նախաբաններին։ Պատմությունն արա ու վերջ», ասաց իմ ընկեր Նապալյոնը և անցավ հերթական պատմությանը։

Նապալյոնը շարունակեց դպրոց գալ։ Լավ էր սովորում, չորս, հինգ, հինգ ու խաչեր էր ստանում մարդու տղան։ Բայց կռվարար էր, չեղած տեղից, փուչ բաներից կռիվ էր գցում։ Ում հետ էլ որ կռվեր՝ մեջը ես էի տուժում, որովհետև ճակատագրով իմ ընկերն էր։ Հարձակվում էին իրար վրա կարմրակատար աքլորների նման, ես մեջ էի ընկնում, Նապալյոնս պարզ է, ետ էր քաշվում, խմբով թափվում էին ինձ վրա։ Դպրոցում էլ հենց մի բան էր լինում, Լուսնածիր մորաքույրը գյուղով մեկ կապում էր ծղրտոցը. «Խիղճը մեռածները տվել են դանակի բերան ընկած տղիս նորից են անդազահան արել»։ Բայց ո՞վ կհամարձակվեր Նապալյոնի վրա ձեռ բարձրացներ։ Գիտեին, որ նա քանդած ու նորից մի կերպ հավաքած, շուլալած երեխա է։

«Ամա՞ն, Նապալյոնիս ձեռք չտաք, ցաք ու ցրիվ կլինի, էն սիրտը թաղած բժիշկները մի կերպ հազիվ են հավաքել», ասում էր մայրը, թեև Նապալյոնը մեր դասարանի, մեր դպրոցի, մեր գյուղի ամենակարմրաթուշ տղան էր։

Ամառն եկավ։ Գնացինք գետում լողանալու։ Նապալյոնն էլ մեզ հետ եկավ։ Տխուր նայեց մեզ, նայեց ջրերին ու սկսեց լաց լինել։ Պահանջն ի՞նչ էր. ինքը որ չի լողանում, մենք էլ չպիտի լողանանք։ Կռիվ սկսեց։ Գիտեի իմ գլխին գալիքը։ Ուսուցիչ ու մեծ չկային, որ գային ինձ օգնության։ Էս մեր շաչված տղերքն էլ, արդեն տկլորված, պիտի օրենքով ջրի մեջ լինեին, սատանայությունը մեջներն է ընկել, ուզում են

Նապալյոնի շորերը հանել:

— Նապալյոն,— ասացին,— գ ւն-քերդ, ուսադիրներդ, շորերդ հանի ու արի միասին մտնենք ջուրը:

Նապալյոնը ետ-ետ եկավ ու թիկունքը բերեց սեղմեց իմ կրծքին, երկար լեզուն հավաքեց ատամների տակ ու այնպէս էր դողացնում, ոնց որ սառցակալած ջրից նոր դուրս եկած լինեւ: Ինչ անեմ, ինչ չանեմ, ինչպես փրկեմ իմ ընկերոջը: Վերջին պահին, երբ մեր ընկերները ատամները կրճտացնելով գալիս էին, երբ ուզում էին պարզել Նապալյոնի առեղծվածը, Նապալյոնս ավելի հպվեց ինձ, իսկ ես նրան գրկեցի ու ժայռի վրայից նետվեցի մեր լճի մեջ: Ջրի մեջ ուշքի եկա: Ես պահել եմ Նապալյոնին վեր, որ հանկարծ ցաք ու ցրիվ չլինի, ջուրը չտանի նրա մասերը, իսկ Նապալյոնս փոխանակ լող տալու, թևերը շարժելու, ասում է՝ վայ, հասեք, խեղդվեցի: Ես թիկնալողով, ոտնալողով նրան վեր պարզած տանում եմ, իսկ նա հա գոռում է՝ խեղդվեցի: Խելոք ու ամենահաս Վարդանը ո՞նց էր եկել կանգնել լճի ներքևում ու աչքը ջրից չէր հեռացնում: Էդ միամտին էլ էր թվում, որ ջուրը հիմա Նապալյոնի մասերը կպոկի կտանի ու ինքը կբռնի: Ես ջրի մեջ փոթկացրի: Դրանից վատ բան չկա: Թուլացա: Նապալյոնը ոնց որ մի պարկ կարտոֆիլ, փթանոց քար, կախվել է վզիցս, ինձ խեղդում է ու հետն էլ միալար գոռում՝ խեղդվեցի... Մեկ էլ ի՞նչ տեսնեմ. տղաները գոտի ու շալվար իրար կապած՝ փրկության պարան դարձրած, շպրտեցին ներքև, իրենք էլ ձեռք-ձեռքի տված, գոչում են՝ մի վախիր, բռնիր: Վախենալու բան չկա, եթե չհիշես, որ բժիշկները մի կերպ հավաքել են Նապալյոնին:

Մուկ դարձած Նապալյոնին ընկերները գրկեցին, շորերը հանեցին, մզեցին, փռեցին կանաչների վրա ու նրան պառկեցրին տաք սալքարին: Նապալյոնը ոչ մի խոսք չէր ասում: Ձեռքս դրի սրտին. շատ լավ տրոփում է: Ականջս դրի սրտին. շատ լավ տրոփում է: Մենք շշուկով խոսում ենք իրար հետ, դիտում նրան մանրամասնորեն, նայում մեզ, համեմատություններ անում, և ահա հայտնաբերեցինք այն տեղը, որտեղից փորը բացել են, ամբողջ փորի եղած-չեղածը դուրս տվել, կտրատել ու նորից լցրել: Կարերի տեղն էլ երևում է:

Երեկոյան գյուղում լսվեց Լուսնածիր մորաքրոջ ծանոթ ծղրտոցը. «Երեխիս խաբել են, տարել ջուրը ու նրան ջուրն են թափել»:

Դրանից հետո էլ ո՞վ կփորձեր մատով դիպչել Նապալյոնին, մի ծտի թև քամի աներ նրա կողմ. «Ի՞նչ եք ուզում, դանակի տակ ընկած իմ երեխայից» կծղրտար մայրը:

Ավարտեցինք գյուղի ոչ լրիվ միջնակարգ դպրոցի յոթերորդ դասարանը: Ամենաբարձր առաջադիմությունն ուներ Անուշավան Վարդազարյանը, որովհետև որբ էր մեծացել, բոյը փոքր էր, ամենագլխավորը, սակայն, ինչպես մայրն է ասում, «դանակի տակ ընկած երեխա էր»:

Իմ ընկեր Նապալյոնը, որ միայն ինձ համար է Նապալյոն ու մեկ էլ մեր դասարանցիների ու իր Լուսնածիր մոր համար, հիմա աշխատում է հանրապետության գործարաններից մեկում: Վերջերս հանդիպեցի: Կարգին կլորիկ մարդ էր դարձել:

— Ինչպե՞ս ես,— հարցրեց:

— Ոչինչ,— ասացի,— մի երկու օր առաջ եմ հիվանդանոցից դուրս եկել, կույր աղիքս հեռացրին, դեռ համարձակ չեմ քայլում:

— Դա հեչ, ի՞նչ բան է, որ... Ես դեռ մի մատ երեխա էի, գնացի հեռացնել տվի, ոնց որ մատիցդ փուշ հանեն...— ասաց ու երկար նայեց աչքերիս: Ես շատ միամիտ ձևացա: Իբր, մանկության և ոչ մի պատմություն էլ չեմ հիշում:

Ես ասացի, որ գործարան եմ եկել արտադրության մարդկանց մասին ակնարկ գրելու, ուրախ եմ, որ հանդիպում եմ իմ մանկության ընկերոջը: Իսկ նա զանգ տվեց չգիտեմ ում, ասաց, որ Անուշավան Նիկողոսովիչն է, ժուռնալիստ է եկել, ինչ տվյալներ ու ցուցանիշներ որ պետք են, բերեք...

Քիչ անց ներս մտավ մի տիկին.

— Կներեք, Անուշավան Նիկողոսովիչ...

Ես հասկացա, որ շատ կարևոր մարդու հետ եմ խոսում, ավելի կարևոր, քան կորած մանկության թանկագին ընկերս՝ Նապոլեոն Դաղստանքշլյան-Անուշավան Նիկողոսի Վարդազարյանը:




Ավստրալիայի հյուսիսային մասում, Ռոբինզոն գետի ավազանում ապրում է կոկորդիլոսների քիչ ուսումնասիրված մի առանձնատեսակ: Նրանք տեղական բնակիչների հետ խաղաղ են ապրում, միասին լողանում են, իսկ փոքրիկները բարձրանում են կոկորդիլոսների մեջքերին: Դեռևս դեպք չի եղել, որպեսզի կոկորդիլոսները հարձակվեն մարդկանց վրա: Գուցե այդ հանգամանքը բացատրվում է նրանով, որ մարդիկ կոկորդիլոսներին չեն որսում, այլ կերակրում են նրանց կրիաներով և թռչուններով:

1970 թվականի հունվարին մոտ 150 կետ «թզուկներ», որոնց երկարությունը չորս մետրից չի անցնում և քաշը հասնում է «միայն» 400 կիլոգրամի, Հյուսիսային Ամերիկայի Ֆորտ-Պիրս քաղաքի մոտ «ինքնասպանություն» գործելու նպատակով իրենց շպրտեցին ծովափ: Ինքնակամ փրկարար ջոկատների աշխատանքները ոչ մի արդյունք չտվեցին: Հաջողվեց բռնել մի քանի կետեր, տանել բաց ծով ու այնտեղ բաց թողնել, սակայն նրանք էլ վերադարձան նույն տեղը ու նորից իրենց շպրտեցին ծովափ: Պատճառը այնպես էլ չպարզվեց:

# ԻՆՔԸ ՓՈՔՐ Է,

Թունավոր միջատներ կան, որոնք օժտված են թույն արտադրող գեղձերով և խայթելու դեպքում ցավ, նույնիսկ մահ են պատճառում: Կան նաև թունավոր միջատներ, որոնք թեև զուրկ են թույն արտադրող հատուկ գեղձերից և թույն փոխանցող օրգաններից, բայց պատահաբար շփվելով մարդու օրգանիզմի հետ կամ ընկնելով այնտեղ, կարող են առաջացնել թունավորման երևույթներ: Դրանցից առաջինները կոչվում են ակտիվ, իսկ վերջինները պասսիվ թունավոր կենդանիներ:

Այդ միջատներից կարելի է հիշատակել մեզ մոտ հաճախ հանդիպող կարիճին: Այդ խորհրդավոր սարդանման կենդանու արտաքինը շատ ազդեցիկ է: Նա տարածված է չորային և տաք գոտիներում: Ապրում է քարերի տակ, ավերակ պատերի ճեղքերում, հողաշեն տներում, կրծողների լքված բներում: Ցերեկները անց է կացնում բնում, իսկ գիշերները փնտրում է իր որսը՝ տարբեր միջատներ, և սնվում նրանցով: Նրա կլոր, թունավոր գեղձը գտնվում է մանգաղաձև պոչի ծայրին և ունի սրածայր խայթոց, որի հիմքում տեղադրված է գեղձի ելքը: Կարիճի խայթածը շատ ցավոտ է, սկզբում կարծես վառվում է, հետո թմրում, ուռչում ու կարմրում: Ցավը արագ տարածվում է ներվերի ուղղությամբ: Երբեմն առաջանում են թափանցիկ հեղուկով լի մաշկային բշտիկներ: Հնարավոր են նաև օրգանիզմի ընդհանուր թունավորման երևույթներ՝ ջղաձգումներ, խոսելու և շնչառության թուլացում, սրտխառնուք, տենդ, շնչահեղձություն, փսխումներ և այլն: Կարիճի խայթոցի հետևանքով մահացու դեպքերը հազվադեպ են, բայց միշտ անհրաժեշտ է դիմել բժշկի: Առաջին օգնության նպատակով խայթված տեղը տաքացնում են. առատ կերպով օգտագործում են տաք ըմպելիքներ (սուրճ, թեյ, կակաո), վիտամիններ, խաղողաշաքար, օգտակար է նաև

# ԹՇՆԱՄՈՒԹՅՈՒՆԸ՝ ՄԵԾ

տաք լոգանքը: Ցավոտ տեղը կարելի է ներարկել 2—4 տոկոս նովոկաինի լուծույթ: Բուժման ամենանախընտրելի միջոցը համարվում է հատուկ հակաթունային սիճուկի (անտիսկորպինոն) օգտագործումը: Կարիճների տարածման վայրերում հանդիպում են նաև մորմեր (փալանգա): Սրանք ծածկված են մազիկներով և օժտված են ուժեղ ծնոտներով: Վարում են գիշերային կյանք, բայց սիրում են հավաքվել լույսի շուրջ: Շատ արագաշարժ են. սընվում են սատկած միջատներով, որի հետևանքով կեղտոտվում են նրանց ծնոտները և խայթելու պահին վերքը վարակում են նեխիչ մանրէներով:

Հետաքրքիր է այն, որ կարիճներն ու մորմերը ոխերիմ թշնամիներ են, նրանց հանդիպումը սովորաբար վերջանում է կենաց ու մահվան պայքարով: Նրանց մաքառման ընթացքում մորմն աշխատում է իր ուժեղ ծնոտներով պոկել կարիճի թունակիր պոչը, իսկ վերջինս էլ փորձում է իր խայթը մխրճել մորմի մարմնի մեջ:

Որոշակի վտանգ են ներկայացնում նաև մեղուները և կրետները, որոնք որոշ գերզգայուն անձանց մոտ կարող են նույնիսկ մահ առաջացնել: Նրանց խայթած տեղը նույնպես անհրաժեշտ է ախտահանել, ապա սառը պահել և դիմել բժշկի:

Մեր այս զրույցի նպատակն է ո՛չ թե վախեցնել բնությունը սիրողներին և հեռու պահել նրանց առողջության և հաճույքի սքանչելի աղբյուրից, այլ տալ որոշ գիտելիքներ՝ ճանաչելու իրենց փոքրիկ թշնամիներին, պաշտպանվելու նրանցից և զգույշ լինել արշավների և դաշտում գիշերելու տեղ ընտրելու ժամանակ:

**Վ. ԽԱԶՈՅԱՆ**
կենսաբանական գիտությունների թեկնածու, բժիշկ

●

Սամույրը ամենավայրագ գիշատիչն է Սիբիրի տայգայում: Նա որսում է նույնիսկ այն ժամանակ, երբ կուշտ է: Թակարդի մեջ գըցած կենդանին նետվում է դեսուդեն, գոռում է, նետվում ցանցի վրա: Նրան անհնար է դիտել, զննել: Այն աստիճանի չղային կենդանի է սամույրը, որ երբեմն երբ որսում են, մեռնում է որսորդի ձեռքերի վրա, սրտի պայթյունից:

Սամույրը ապրում է Սովետական Միությունում, Մոնղոլիայում, Չինաստանում և Կորեայում: Սամույրի մորթին շատ թանկ է գնահատվում միջազգային աճուրդներում:

●

Կալանը կամ Կամչատկայի կուղբը շատ հաճելի, բարի և խելացի կենդանի է: Սովորաբար կերակրվում է ծովափին: Որսում է ծովային ոզնիներ, խեցգետիններ և հավաքում նրանց իր թաթի մեջ: Որպես ճաշասեղան ծառայում է կալանի կուրծքը: Նա իր կրծքի վրա տեսակավորում է կերը, մաքրում, հավաքում է թևի տակ, այնուհետև մեկ-մեկ հանում է պահեստատեղից ու քարով, որ միշտ պահած ունի թևի տակ, ջարդում է կրծքի վրա և ուտում: Ճաշից հետո քնում է մեջքի վրա, ալիքների մեջ: Մայրը իր ձագին պահում է կրծքի վրա և այդ դրությամբ մեջ լողում է, որս է անում, կերակրում է իրեն ու իր ձագին:

●

Երբ էգ կենգուրուին հետապնդում են, շպրտում է իր ձագին պարկի միջից: Անհայտ է, թե ինչի համար է նա անում այդ: Նրա համար, որպեսզի հեշտ լինի փախչելը, թե՞ նրա համար, որպեսզի փրկի ձագին: Սակայն պարզված է, որ վտանգը անցնելուց հետո կենգուրուն միշտ վերադառնում է այնտեղ, որտեղ թողել է ձագին, և փոքրիկը իր թաքստատեղից ընդառաջ է վազում մորը:




ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱ-
ԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ
ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

Հասցեն՝ 375015, Երևան 15. Կարմիր բանակի փողոց 15։
Հեռախոսներ՝ 56-32-72, 58-08-33, 56-14-96։

«Пионер». На армянском языке. Ежемесячный детский журнал ЦК ЛКСМ Армении и Республиканского Совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375015, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

## № 3 • ԱՅՍ ՀԱՄԱՐՈՒՄ • 1981



Շապիկի առաջին էջը՝ ԶԱՎԵՆ ՍԱՐԳՍՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝
ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

Խմբագրական կոլեգիա՝
ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատ. քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆԶՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՄԻԼԻՏՈՆՅԱՆ Է., ՍԻՐԱՎՅԱՆ Հ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր)։

Տեխ. խմբագիր՝
Հ. ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ
Վերստուգող սրբագրիչ՝
Հ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Հանձնված է արտադրության 19.1.81 թ.։ Ստորագրված է տպագրության 6.3.81 թ.։ ՎՖ 06545։ Թուղթ օֆսեթ, 70×100 1/16։ Տառատեսակ՝ Նորք։ Օֆսեթ տպագրություն։ 3,9 պայմ. մամ., 3,1 հրատ. մամ.։ Տպաքանակ՝ 61232։ Պատվեր 75։ Գինը 15 կ.։

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Երևան, Օրջոնիկիձեի պող. 2։

Типография Издательства ЦК КП Армении, Ереван, пр. Орджоникидзе, 2.

# ԺԱՄԱՆՑ

Ծովահեններից ով ինչով է զբաղված։







Գտեք բռնցքամարտիկի ստվերը։

## № 2-ՈՒՄ ՏՊԱԳՐՎԱԾ «ՊԱՊԵՆԱԿԱՆ ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐԻ» ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐԸ

1. Գիր (փչանում է ջրից, հրից, իսկ ժայռի վրա արձանագրվելիս չի վնասվում)։

2. Հինգ մարդ՝ չորսը արթուն, մեկը քնած։

8. Կրիա։

4. Գիր (թանաք, թուղթ, գրել, կարդալ)։

5. Արձագանք։

6. Թուխսը, ձուն, ճուտը։

7. Հայելի։

8. Մարդու երեք հասակները (երեխա ժամանակ չորեքթաթ է քայլում, հետո՝ երկու ոտքով, ծերության տարիներին՝ ձեռնափայտով)։

9. Աղ, ջորի, ջուր, կամուրջ։

ԳԻՆԸ 15 Կ. ԻՆԴԵՔՍ 77806



# ՇՐԻ ԼԱՆԿԱՅԻ ԱՐՎԵՍՏԸ

Շրի Լանկայի հանրապետությունը (Ցեյլոն կղզի) գտնվում է Հնդկական օվկիանոսում, Հնդկաստանի հարավային ափերի մոտ: Բազմադարյա պատմություն ունի, բազմադարյա մշակույթ: Դյութում են ազգային ավանդույթների ոգով կատարված փորագրությունները փայտի վրա, ճետաղե դրվագազարդերի կատարելությունը, ֆանտաստիկ դիմակները, որոնք վկայությունն են այդ հինավուրց մշակույթի անսպառ հարստությունների: